

Սիրիայի երեխաներից բացի, Հայաստանում իրենց հանգիստն անցկացրին նաև Լիբանանի և Ֆրանսիայի վարժարանների հայ երեխաները։ Ծաղկաձորից բացի, նրանք եղան նաև Հանքավանում, Կիրովականում և Սևանավանում։ Այցելեցին Գառնի և Գեղարդ, եղան Էջմիածնում ու լավ ծանոթացան իրենց սիրելի մայրաքաղաք Երևանին։

Մեկնելուց առաջ սփյուռքահայ երեխաները հյուր եղան «Պիոներ» ամսագրի խմբագրությունում։

Ֆրանսիայից, Լիբանանից և Սիրիայից եկած պատանիները Կիրովականի բուսաբանական այգում



Այսօր ճամբարի դրոշը բարձրացնում են հյուրերը

# Թող իմանան

Նավը հանդարտ լողում էր առաջ։ Նավը ճերմակ էր, իսկ գլխին ծածանվող դրոշակը՝ կարմիր։ Դրոշակի կարմիր ցո՞լքն էր ընկել Բոսֆորի ջրերին, թե՞ կես դար առաջ այդ ջրերին խառնված հայ մանուկների անմեղ արյամբ էր, դեռ հրդեհված ծովը։

Նավախելին կանգնած էին ինը սևաչ փոքրիկներ. այդ նրանց թխահեր գլուխնե՞րն էին արտացոլվել ծովի կապուտակ հայելու մեջ, թե՞ կես դար առաջ ծովի ալիքներին հանձնված հայ մանուկների։

Ի՞նչ էին մտածում նավախելին խմբված ինը սևաչ փոքրիկները, որ այդպես կրակված հայացքները սևեռել էին հորիզոնի վրա ուրվագծված կապույտ մինարեթներին։ Նրանք ավելի են համախմբվում, տաք-տաք խոսում իրար մեջ, ինչ-որ բան պայմանավորվում...

Իսկ նավը մոտենում է ափին։ Նավաստիները արդեն պատրաստում են խարիսխները։

— Երեխաներ, պատրաստվեք իջնել,— մոտենում է նրանց թխահեր դաստիարակչուհին,— ժամանակ չկորցնենք, շտապենք դիտել Պոլիսը, ինչպես որ դիտեցինք մյուս նավահանգստային քաղաքները։

Երեխաները լսո՞ւմ են, թե՞ ոչ, չեն արձագանքում, ոչ մեկը չի շարժվում տեղից։

digitised by A.R.A.R.@

ՍԵՊՏԵՄԲԵՐ
№ 9 1964 Թ.

# Պիոներ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

— Երեխանե՛ր,— ձայնը բարձրացնում է դաստիարակչուհին։

— Օրիորդ, կաղաչենք մի՛ խանգարեք,— խմբովին աղաղակում են նրանք՝ մեխված մնալով իրենց տեղերում, առաջվա պես կրակված, բայց այժմ նաև ոգեշունչ հայացքներն ուղղած Պոլսին։

— Տղաքնե՛ր, հաշված ժամեր ունենք, մի՞թե չեք ուզում դիտել այն քաղաքը, ուր ապրել, ստեղծագործել են Պարոնյանը, Դուրյանը, Զոհրապն ու այլ մեծեր, չե՞ք ուզեր այցելել այն գերեզմանոցը, ուր այնքա՜ն թանկ հայ շիրիմներ կան...

— Օրիորդ, կաղաչենք...

Օրիորդ Ազնիվը նայում է, աշխատում է հասկանալ, թե ինչով են զբաղված նրանք, տեսնում է երեխաներից մեկի ձեռքին գլխից վեր, օդում պարզած պիոներական վզկապ։

— Ի՞նչ կընեք, չեմ հասկնար...— տարակուսած հարցնում է օրիորդ Ազնիվը։

— Թող թուրքերը տեսնին ու հասկնան, որ մենք հայրենիք կերթանք...

Օրիորդ Ազնիվը խանդաղատանքով ժպտում է, ինքն էլ մոտենում, ձուլվում նրանց խմբին, այո՛, թող իմանան, մենք հայրենիք ունենք, մենք հայրենիք ենք գնում։

# Հայրենիք կերթանք



Մայկանոպի «Փարոս» ճամբարում հյուրերին ընդունեցին պատվավոր պիոներ

***

Ճերմակ նավը մտել է հայրենի ջրերը։ Ահա և Օդեսան։ Տղաքնե՛ր, նավաստիներ, ափ նետեք խարիսխը։

Նույն օրը, թեև գիշեր էր արդեն, ինքնաթիռը Օդեսայից Երևան թռցրեց սփյուռքահայ երեխաների առաջին խմբին՝ հայրենիքի հրավերով, Հայաստանի պիոներական ճամբարներում իր ամառային հանգիստը անցկացնելու համար։

— Շատ կխնդրենք ձեզի,— դիմում է օրիորդ Ազնիվը ինքնաթիռի ուղեկցուհուն,— Երևանին մոտենալու ատեն՝ իմաց ըրեք մեզի։

Խոր գիշեր էր։ Քունը հաղթել էր երեխաներին։ Արթուն է միայն Ազնիվը։

— Մոտենում ենք Երևանին...— լսեց նա բաղձալի կանչն ու վեր թռավ։

— Երեխաներ, շո՜ւտ... արթնացե՛ք... հիմա տեսնելու ենք գիշերային Երևանը։

Արագորեն հաղթահարելով քունը, երեխաներն արթնանում են, խմբվում դաստիարակչուհու շուրջը, ճակատները սեղմում ինքնաթիռի ապակիներին և ագահաբար նայում ցած, այո՛, այսպիսին էլ հենց պատկերացրել էին Երևանը, այսպես լուսաշաղախ ու մտերմիկ։

Նրանք ագահաբար նայում են ոչ միայն իրենց համար, այլև իրենց ծնողների փոխարեն ու նրանց համար։

—Աղվո՜րս, հայրենիք կերթաս, քուկին աչքերովդ տեսնելու ես մեր հայրենիքը, երանի՜ աչքերուդ,— ասել էին ամեն մեկի ծնողները ու անթիվ, անհամար

digitised by A.R.A.R.@

համբույրներ տեղացել նրանց աչքերին։

Խոշոր, թանձրորեն թախծոտ աչքերով մի տղա կա նրանց մեջ, անունը՝ Սահակ։ Սահակի աչքերը քիչ էր մնում, որ դուրս պրծնեին իրենց բներից։ Սահակի աչքերը պարտավորված են՝ ավելի բան որևէ մեկին։ Սահա՛կի - ծնողները Սահակին պարտքով են ճանապարհ դրել մինչև Օդեսա, որից հետո հայրենիքին էր հոգալու նրանց ծախսը։ «Հոգ չէ, թող պարտքով ըլլա, միայն թե Սահակս տեսնե հայրենքը»,— ասել էր նրա մայրը, թեև շատ ծանր էր նրա համար պարտքի բեռի տակ մտնելը։

— Ինչ աղվո՛ր է Երևանը...

— Աս ի՜նչ աղվոր է եղեր մեր Երևանը,— խենթացած բացականչում են երեխաները՝ պապակ աչքերով, ոչ թե դիտելով, այլ խմելով Երևանի լույսերը։

— Օրիորդ, իսկ ո՞ւր է Մասիսը...

— Օրիորդ, ցո՛ւյց տվեք Մասիսը...

— Օրիորդ, իսկ Երևանում գտնվողները հիմա մեզի կտեսնե՞ն, չէ՞ն տեսներ, որ կմոտենանք...

Հարցեր է, որ տեղում են երեխաները։ Իսկ պատասխաններ չկան... դաստիարակչուհու կոկորդը խցանվել է, նա խեղդվում է հուզմունքից, նա արցունքների միջից հազիվ կարողանում է ժպտալ։

Ինքնաթիռի անիվները բախվում են գետնին։

— Երեխանե՜ր, մենք արդեն հայրենի հողի վրա ենք,—վերջապես աղաղակում է Ազնիվը։

Մի քանի վայրկյան ևս, և երեխաները իրար հրհրելով, դուրս են գալիս ինքնաթիռից։

— Մենք արդեն հայրենի հողի վրա ենք, հայոց Արշակ արքայի պես հայրենի հողին ոտք · դնելուն



Ճամբարային ուրախ երգն է հնչում անտառային բացատում



Սահակ Թոթոյանը արտասանում է Սիլվա Կապուտիկյանի «Հայոց լեզուն» բանաստեղծությունը

պես՝ մենք ևս զորացանք։ Նայեք, զորացանք, այդպես չէ՞, օրիորդ...

—Այո՛, հապա ինչպե՞ս...

***

Արդարև զորացած էին նրանք։ Այլապես ո՞ւր էր այն կաշկանդվածությունը, որ ունենում է երեխան անծանոթ միջավայր ընկնելիս։

Սփյուռքահայ մանուկ հյուրերը պիոներական ճամբարում ոչ միայն կաշկանդվածություն չեն զգում, այլև ոգեշնչված ու թևավորված են։ Հա՜պա ինչպե՞ս, չէ՞ որ այս իրենց հողն է, այստեղ ամեն ինչ իրենցն է, երկինքն ու երկնքի աստղերը, գետինն ու գետնի վրա եղող ամեն բան, ծառը, ծաղիկը, դաշտում թռչող թիթեռը, մեղուն. իրենցն է այս ճամբարը, ճամբարի խաղահրապարակը, խաղահրապարակի ճոճանակները, որոնց վրայից նրանք ժամերով ցած չեն իջնում։

— Այսպիսի վայելքների նրանք խիստ կարոտ են եղել,— ներողամտորեն բացատրում է Ազնիվը։

Ճմլվում է սիրտդ։ Ճմլվում է ավելի, երբ լսում ես այդ երեխաների երգերն ու արտասանությունները։ Ճամբարային հանդեսների ժամանակ նրանք բոլորն էլ մեծ պատրաստակամությամբ թե՛ երգում են, թե՛ արտասանում, նաև պարում։ Երգում և արտասանում են բացառապես հայրենասիրական երգեր ու բանաստեղծություններ։ Տեղի երեխաների համերգացանկերում նույնպես զգալի տեղ է բռնում հայրենասիրությունը։ Սակայն հայրենիք բառը սրանց շրթունքներին այլ կերպ է հնչում, Սփյուռքի երեխաների շրթունքներին՝ այլ։ Առաջին դեպքում դա արտահայտում է հպարտության ու սիրո զգացում։ Մինչդեռ Սփյուռքի երեխաներն այնպես են արտասանում հայրենիք բառը, ասես դա բառ չէ, այլ սրտից պոկված հառաչանք, և ոչ նույնիսկ հառաչանք, այլ՝ սրտի մի բեկոր։

Ոչ պակաս հուզիչ է տեսնել նրանց՝ ճամբարային դրոշակը իջեցնելու և բարձրացնելու արարողության ժամանակ։ Ճամբարի հրապարակում կանգնած են ողջ ճամբարի պիոներները՝ կանոնավոր շարքերով, պատվի առած, իսկ պիոներների մի խումբ առանձնացված է դրոշակն իջեցնելու համար, երբ երեկո է, կամ բարձրացնելու, երբ առավոտ է։ Դա պատվավոր մի դեր է, որ տրվում է ճամբարի լավագույն պիոներների հետ նաև սփյուռ-

8175-64



digitised by A.R.A.R.@

քահայ հյուրերին։ Փողային նվագախումբը հնչեցնում է Սովետական Հայաստանի հիմնը։ Այդ հնչյունների տակ խումբը շարժվում է դեպի դրոշակաձողը։ Նրանց մեջ եղող Սփյուռքի երեխաները քայլում են մեծ երկյուղածությամբ ու միաժամանակ անհամբեր, երբեմն պոկվելով ու առաջ անցնելով խմբից։ Ահա մոտեցան ձողին։ Եկեք մենք հետևենք միայն փոքրիկ Էփեմիային, տեսեք, թե ինչպես են դողում նրա մատները, ինչպես է նա ձգնում դրոշակաձողի լարը և ինչպիսի տենդով է այդ լարը ձգում՝ հայացքը հառած դրոշակին։

Էփեմիան խմբի ամենափոքրն է, թերևս նաև ամենաժիրը. աստղ-խոսող, ժպիտը դեմքից անպակաս։ Նա շատ նոր երգեր, բանաստեղծություններ ու պարեր է սովորել, այդ թվում ռուսական «Յաբլոչկա» պարը։ Ե՞րբ հասցրեց նա այդ պարի ոգին այդպես ըմբռնել, ի՜նչ թափով, ի՜նչ ներշնչանքով է պարում։

— Այստեղ քեզ լավ ես զգում, այնպես չէ՞, Էփեմիա։

— Օ՜, այո՛, ես շատ երջանիկ եմ... բայց...

— Ի՞նչ...

— Բայց ոչ այնչափ, որչափ աստեղաց երեխաները... որովհետև անոնց ծնողքը ուզած ատեն



Հայրենի բնության գրկում նրանք իրենց շատ լավ են զգում

նապարհ կտրել-եկել, միայն թե տեսնի հայրենիքը։ Եթե փոքրիկ Էփեմիան հպարտ է այսօր իր հայրենիքով, ապա հայրենիքն էլ ոչ պակաս իրավունք ունի հպարտ լինելու իր Էփեմիաներով։

Էփեմիա, սիրելիս, օրերից մի օր, քո երջանկությունն էլ կատարյալ կդառնա։ Հավատացիր, որ



Մանուշակը և Արաքսը Ստեփանավանում նոր ընկերներ ունեցան



Երևանը նրանց վրա անջնջելի տպավորություն թողեց

Լուսանկարները՝

ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ և ՄԻՔԱՅԵԼ ՔՈՉԱՐՅԱՆԻ

կուզան տեսնելու... իսկ...— Նրա աչքերը լցվում են արցունքով:

Իսկ Էփեմիայի ծնողները մնացել են յոթ սարի, յոթ ծովի ետևում։ Փոքրիկ Էփեմիան այն տարիքում է, երբ երեխան քնի մեջ անգամ բաց չի թողնում մոր փեշը։ Ուրեմն այդ ի՞նչ զորավոր ուժով է արտահայտվել հայրենասիրությունը. հայրենիքից հեռու ծնված այս մի մատ երեխայի մեջ, որ նա կամովին թողել է մոր գիրկը, այսպիսի մի նա-

կլինի։ Դու կգաս հայրենիք, արդեն ոչ մենակ, այլ ծնողքիդ հետ, այլևս ոչ իբրև հյուր, այլ՝ տան տեր։

Ցանկանանք միայն, որ շուտ գա այդ օրը։

*ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ*



digitised by A.R.A.R.@



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

# ՏՂԱՍ ՔԱՅԼՈՒՄ ԷՐ... ԴՐՈՇԸ ՁԵՌՔԻՆ

ԳԵՂԱՄ ՍԵՎԱՆ

Այդ պատահեց բոլորովին անակնկալ, հեռուստացույցի առաջ։ Ես տանը նստած դիտում եմ պատանի լենինյանների շքերթը մայրաքաղաքի հրապարակից։ Եվ ի՜նչ, շարքերից մեկի առջևից քայլում է իմ տղան... դրոշը ձեռքին։ Խեղդվում է իմ կոկորդը, և ես դուրս եմ գալիս փողոց։ Փողոց դուրս գալը հանգստացնում է ինձ։ Ես ներողություն եմ խնդրում բոլորից, որ չկարողացա լրիվ հետևել շքերթին։ Երբեմն լինում է և այդպես։ Թե ինչու, այդ մասին արդեն կիմանաք, երբ մեծանաք դուք էլ։ Էհ, երբեմն հուզումներ կան, հուզումներ՝ երջանկությունից բխած, որ մարդուն առաջնորդում են տարօրինակությունների։ Այդ մասին էլ հետագայում...

Քայլում եմ փողոցով, և աչքերիս առաջ պատկերանում է մի հրապարակ, հեռո՜ւ, հեռո՜ւ հայրենիքից։ Ես էլ եմ փոքր, պատանի, ճիշտ քեզ նման և գիտեմ, որ շատ էի սիրում տոնական օրերը, սիրտս ուռչում էր, խայտում էի ուրախությունից։ Է՛հ, ո՞վ չի սիրում քայլել թմբուկների համաչափ զարկերի տակ։

Հիմա հիշում եմ, որ ես էլ ձեզ նման տողանցում էի հեռու՜, հեռու՜, օտար երկրներում։ Մենք՝ հայ դպրոցականներս, քայլում էինք ամենահետին շարքերում։ Նախ քայլում էին թուրքերը, տասնյակ հազարներով, վերջում գալիս էին փոքրամասնությունների աշակերտները և այդ բոլորի վերջում, հույներից ու հրեաներից հետո, մենք՝ հայերս։ Լինում էին նաև կարմիր պաստառներ, հրապարակների լայնքին ու երկայնքին ամրացված, որոնց վրա սպիտակ գրերով լոզունգներ էին գրված... «Երանի նրան, ով կասի՝ Թուրք եմ»։

Ես փոքր էի և չէի հասկանում, թե ինչու միայն Թուրք լինելու համար պետք է երանի տալ։ Չէ՞ որ ես ու ընկերներս էլ էինք ուրախանում։ Չէ՞ր լինի, որ երանի տայինք մեր մանկության, պատանության անկրկնելի տարիներին։ Մենք շարքերի հետևից ուրախության փշրանքներ էինք հավաքում, առանց իմանալու, որ գտնվում էինք ազգայնամոլությամբ տառապող թշնամու երկրում։ Երբ մի քիչ էլ մեծացանք, մի օր ես հարց տվի իմ թուրք ուսուցչին, թե որտեղ է գտնվում Հայաստանը։ Նա շեշտակի նայեց իմ աչքերին և խիստ, շատ խիստ, զսպված ատելությամբ ասաց.

— Հայաստան գոյություն չունի՛, չկա՛, նըստի՛ր,—և աշխարհագրությունից «երկու» նշանակեց։

Ես ուզում էի բղավել, որ աշխարհում նաև կա Հայաստան։ Մայրս այդ մասին շշուկով ասել էր ինձ (իսկ ես կյանքում ամենաշատ հավատում էի մայրիկիս)։ Նա չիմացավ իմ հարցման մասին, ես համոզված եմ, որ եթե իմանար, այլևս ոչ մի գաղտնիք չէր վստահի ինձ։ Հետո, երբ արդեն երիտասարդ էի, վերցրի մայրիկիս, հեռացա Թուրքիայից, սկսեցի «փնտրել» իմ հայրենիքը։ Օտարության մայթերում զավակներ ունեցա, հայր դարձա։ Միշտ փնտրում էի իմ հայրենիքը, այս անգամ արդեն ինձ ու իմ զավակների համար։ Մայրս, այդպես էլ իր սրտի ամենաթանկ գաղտնիքն ու սերը սրտում՝ մահացավ օտարության մղձավանջային քաղաքներում։

Ես գիտեի, վաղուց գիտեի, որ կա այդ հայրենիքը, կա՝ իր կարմիր դրոշով, «Կապույտ [illegible]րա-



digitised by A.R.A.R.@

զոլ», հրապարակների և պողոտաների վրա ամրացված կարմիր պաստառներով, պաստառների վրա սպիտակ գրերով. «Երանի նրան, ով կասի մարդ եմ»։

Ես իմացել էի և ձեր մասին, իմ մանուկ, իմ պատանի հարազատներ, և լսել, որ ձեզանից մեկը մի օր լաց էր եղել, երբ նրան ասել էին «Թագավոր»...

Ո՛չ, ինքը չէր ուզում լինել Թագավոր։ Որ մեծանար, պիտի լիներ օդաչու։

Իմ տղան էլ էր ուզում օդաչու դառնալ, բայց մի օր լալով եկավ տուն ու հարց տվեց ինձ. նա այն ժամանակ դեռ շատ փոքր էր։ Ես նրա համար գնել էի մի օդանավ, ու նա տարել էր փողոց՝ իր ուրախությունը բաժանելու ընկերների հետ։ Փողոցում խաղալիս, իր արաբ ընկերները փշրել էին գնածս օդանավը ու նրան անվանել... «հայ»։

— Ի՞նչ վատ բան կա, որ դու հայ ես,—աշխատում էի մխիթարել նրան։

Բայց տղաս շարունակում էր լաց լինել։

— Ինչո՞ւ խլեցին ձեռքիցս ու ջարդուփշուր արեցին,—ասում էր,—ինչո՞ւ եմ ես հայ, իսկ նրանք՝ արաբ։ Չէ՞ լինի, որ կամ ես լինեմ արաբ կամ նրանք հայ լինեն։

Կրկնվում էր պատմությունը, և կողմերից ոչ մեկն էլ հանցավոր չէր։ Ի՞նչ անել։ Նրանք շատ էին աղքատ, իմ տղայի ընկերները...

— Ոչի՛նչ, ոչի՛նչ,—իզուր աշխատում էի մխիթարել ես, խոստանում էի վաղն իսկ ավելի մեծը բերել, չէր ազդում,—չէ՞ որ դու օդաչու ես լինելու,—շարունակում էի ես,—մի օր դու կթռչես վերևից, շա՜տ բարձրից և կհասկանաս ամեն ինչ...

Ես հավատում էի ասածիս, այս անգամ արդեն չէի բարկանում մյուսների վրա։ Ես հասկացել էի կյանքը։ Բայց տղաս լաց էր լինում։

Շատ տարիներ չեն անցել այդ օրերից, և ինչ որ պատահեց ինձ հետ, պատահեց բոլորովին անակնկալ... հեռուստացույցի առաջ։ Ես նստած եմ տանը, դիտում եմ պատանի լենինյանների շքերթը մայրաքաղաքի համանուն հրապարակից։ Եվ ի՜նչ, շարքերից մեկի առաջ քայլում է իմ տղան... դրոշը ձեռքին։ Խեղդվում է իմ կոկորդը հուզմունքից։ Երազները իրականանում են։ Ճիշտ է, մի քիչ ուշ։ Իմ տղայի ձեռքին կարմիր դրոշ է։ Այդ շարքերի մեջ առաջին անգամն է անցնում իմ տղան։ Նա վաղը թերևս լինի օդաչու։ Եվ կլինի. ի՞նչ կա որ...

Գնալով փոքրանում է աշխարհը, կարիք էլ չկա օդաչու լինելու։ Չէ՞ որ մի օր աշխարհում կծածանվի մի լոզունգ. «Երանի նրան, ով կասի՝ ՄԱՐԴ եմ»։ Եվ այդ լոզունգը կլինի հեռո՜ւ, հեռավոր այն անկյուններում, որտեղ հայրենիքից, իրենց մայր հողից ինչ-ինչ պատճառներով հեռացած ու օտարության մեջ ապրող մարդիկ չեն ստիպվի հավաքել երջանկության փշրանքներ... Երջանկությո՛ւնը փշրանքներ չի ունենա...

Գեթ մայրս տեսներ իր թոռնիկին։

Տեսա այդ օրը, մանկության ու պատանության ջինջ երազները խեղդողների, կյանքի այդ մեծագույն ոճրագործների դեմ հաղթանակած հերոսների բոսոր արյան հերն էր տանում իր մանկական ձեռքերով։



digitised by A.R.A.R.@

# ՈՂՋՈ՛ՒՅՆ, ԴՊՐՈՑ

### ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Ջա՜ն, ինչ լավ է, որ եկար, սեպտեմբեր։
Հնչեցրիր նորից զանգը դպրոցի,
Նորից ղողանջը նրա խնդաբեր
Կանչում է ահա մեզ ուսման, գործի։

Այնպես եմ, այնպես կարոտել սրտանց
Դասընկերներին բոլոր իմ բարի,
Ոչ թե մի ամառ չեմ տեսել նրանց,
Այլ կարծես արդեն մի ամբողջ տարի։

Տեսնես եղել են ծովափո՞ւմ հեռու,
Թե՞ մեր լեռներում վեհ ու անառիկ,
Ուր երգում են միշտ աղբյուրն ու առուն,
Ուր խաղում է զով շունչը անտառի։

Բոլո՞րն են, արդյոք, առույգ, թարմացած,
Լող տալ սովորե՞ց, տեսնես, Աղասին,
Կամ Սեթն Արագած, արդյոք, բարձրացա՞վ,
Որ երազում էր անվերջ այդ մասին։

Ի՞նչ հանքաքար է դպրոցի համար
Այս անգամ նվեր պատրաստել Սերոն,
Արդյոք, գրե՞լ են մերոնց նոր նամակ
Պիոներները Կուբայի հերոս։

Սակայն ոչ մեկին՝ լավ ու մտերիմ,
Ոչ մեկին ես չեմ կարոտել այնքան,
Որքան մեր բարի դասատուներին՝
Բարեկամներին մեր անզուգական։

Նրանց, որ այնպես սիրով ու համառ
Միշտ փայլեցնում են, կոփում միտքը մեր,
Քննում են, պարզում ամենքիս համար
Լույսի, գիտության հազար գաղտնիքներ։

Մեկը՝ չոր ու բարդ թվերի լեզուն,
Մեկը՝ պոետի երազանքը պերճ,
Մեկը՝ պատմության խորհուրդն իմաստուն,
Մեկը՝ քիմիայի «հրաշքներն» անվերջ...

Ու հիմա, երբ հինն ավարտել, անցել,
Նոր դասարան ենք մտնում՝ թև առած,
Գիտեմ, ավելի շողշողուն գանձեր
Պիտի պարգևեն մեզ առատ-առատ։



# ՁՄԵՌ ՊԱՊԸ ԱՄՌԱՆԸ

### ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

*Երբ Նոր տարին անցավ, Ձմեռ պապը վերադարձավ անտառ։ Փայտ կտրեց, որս արեց։ Ամռան օրերին նա որոշեց գնալ քաղաք։ Մորուքը սափրեց, որպեսզի իրեն չճանաչեն, քուրքն էլ թողեց խրճիթում։ Տեղ հասնելուն պես նա մտավ մանկական այգի. շատ էր կարոտել մանուկներին։ Մտավ, բազմեց նստարանին և սկսեց նայել, թե ինչպես են խաղում երեխաները, երբ ձյուն չկա։ Որը հեծանիվ էր քշում, որը ճոճանակի վրա օրորվում էր, որը ավազից բուրգ էր սարքում, որը նվագում էր, որը՝ պարում։ Լավ է մանկական այգում։ Ձմեռ պապը որոշեց հենց այդտեղ աշխատել և գնաց արհմիությունների պալատ։ Նա այնտեղ մի բարեկամ ուներ, որ կազմակերպում էր Ձմեռ պապի հանդիպումները երեխաների հետ։ Սա սկզբում չճանաչեց Ձմեռ պապին, հետո զարմացավ, թե նա ամռան կեսին ի՞նչ գործ ունի քաղաքում։ Բայց երբ լսեց նրա խնդիրքը, ասաց.*

*—Ուզո՞ւմ ես պաղպաղակ վաճառել երեխաներին։*

*Ձմեռ պապը «վաճառել» բառը չհասկացավ, բայց որպեսզի բարեկամը վրան չծիծաղի, գլխով արեց, այսինքն՝ թե ուզում եմ։*

*Բարեկամը խոսափողը վերցրեց, համարը հավաքեց, խոսեց, համոզեց, վերջը՝ Ձմեռ պապին մանկական այգում պաղպաղակ վաճառող նշանակել տվեց։*

* * *

*Միսակը օրորվում էր ճոճանակի վրա։ Քույրը նստարանին գիրք էր կարդում և մեկ-մեկ աչքի պոչով հետևում էր նրան։ Միսակի ճոճվելու ժամանակը լրացավ, նա վազեց քրոջ մոտ։*

*— Փող տուր, էլի եմ ուզում ճոճվել,— ասաց նա։*

*— Բավական է, գլուխդ կպտտվի, սիրտդ կխառնի։*

digitised by A.R.A.R.@

— Որ այդպես է, պաղպաղակ առ ինձ համար։

— Քրտնած ես, պաղպաղակ ուտես՝ կհիվանդանաս, արի քրտինքդ սրբեմ, նոր՝ պաղպաղակ կառնեմ քեզ համար։

Միսակի քույրը գրպանից հանեց թաշկինակը, սրբեց նրա կուրծքն ու մեջքը։

Հետո՝ երկուսով գնացին պաղպաղակ առնելու։ Պաղպաղակ վաճառող ծերունու շուրջը արտակարգ իրարանցում էր։ Հաճախորդները, հատկապես փոքրերը, շատ էին, և մեկը մյուսի գլխի վրայով պարզել էին իրենց ձեռքերը՝ պաղպաղակի համար։ Միսակի քույրն արագ մոտեցավ և ձեռքը պարզեց՝ մատների միջև տասնհինգ կոպեկանոցը։ Ձմեռ պապը առանց ժպիտի նայեց նրան և ասաց.

— Քեզ չի կարելի. դու մեծ ես։ .

— Ես փող եմ տալիս,—զարմացավ Միսակի քույրը։

— Փող չեմ վերցնում,—ասաց Ձմեռ պապը։

— Փող չի վերցնում, փող չի վերցնում,—հաստատեցին մի քանի մանկական ձայներ։

— Ինձ տվեք,—մեջ ընկավ Միսակը։

— Ա՛յ, քեզ կարելի է,—ժպտաց Ձմեռ պապը և մի պաղպաղակ տվեց նրան։

Վերցնելու ժամանակ Միսակը նայեց վաճառողի աչքերին և դարձավ մտածկոտ. այդ փայլուն, ուրախ աչքերը ծանոթ էին նրան, բայց որտեղի՞ց... Նրանք այնքա՜ն նման էին Ձմեռ պապի աչքերին...



Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

— Զարմանալի է,—ասաց Միսակի քույրը,—առաջին անգամ եմ տեսնում այսպիսի վաճառող։

Ձմեռ պապի պաղպաղակները վերջացան։ Նա հանեց սպիտակ խալաթը, դրեց թևի տակ և գոհունակ սրտով, բարի ժպիտով հեռացավ մանկական այգուց։

*
* *

Հաջորդ օրը քաղաքով մեկ տարածվեց Պաղպաղակ պապի պատմությունը, և զարմանալի չէ, որ մանկական այգին սովորականից ավելի այցելուներ ունեցավ։ Բայց պաղպաղակ վաճառողը մի ուրիշ մարդ էր, ավելի երիտասարդ, և որ ամենակարևորն է, ոչնչով չէր տարբերվում մյուս գործակատարներից։ Մարդիկ արդեն ցրվում էին՝ խորհրդածելով, թե դա երեխաների հնարած պատմություն է, երբ նախորդ օրը այգին այցելած մի քանի երեխաներ ճանաչեցին Պաղպաղակ պապին, որը նստել էր մի ծառի ստվերում։

— Ահա նա՛ է, նա՛ է,—բացականչեցին նրանք և խմբվեցին նրա շուրջը։

Նրանց հետ էր և Միսակը։

— Պաղպաղա՛կ պապի, այսօր պաղպաղակ չե՞ս բաժանելու,—հարցրեց երեխաներից մեկը։

— Ո՛չ,— ասաց Ձմեռ պապը։

— Ինչո՞ւ։

— Ինձ ազատել են աշխատանքից։

— Զրի որ բաժանեք, իհարկե, կազատեն։

— Ափսո՜ս,—հառաչեց մի երեխա։

— Ափսո՛ս,—արձագանքեց Ձմեռ պապը և տխուր ժպտաց։

— Մենք բոլորս շատ ենք սիրում պաղպաղակ։

— Դուք էլ երևի պաղպաղակ սիրում եք,—ասաց մեկը Ձմեռ պապին։

— Այո,—ժպտաց պապը,—պաղպաղակը մի փոքրիկ ձմեռ է, որ հալվում է բերանի մեջ։

— Կա-չկա, Ձմեռ պապի հնարածը կլինի։

— Չէ՛, երեխաներ,—ասաց Ձմեռ պապը,—ես...

Բեմահարթակից տարածվեց պատանի պիոներների նվագախմբի երաժշտությունը։ Երեխաները նիկույն գլուխները ետ շրջեցին։

— Գնանք պարենք,—առաջարկեց մեկը։

Եվ բոլորը վազեցին դեպի պարի հրապարակը։ Բոլորը, բացի Միսակից, որը մնաց լուռ կանգնած։

— Դու ինչո՞ւ չես գնում պարելու,—հարցրեց նրան Ձմեռ պապը։

— Չեմ ուզում պարել,—պատասխանեց Միսակը։

— Հիվա՞նդ ես։

— Ո՛չ, ձեր մասին եմ մտածում։



digitised by A.R.A.R.@

— Ի՞նչ ես մտածում:

— Ոչինչ:

Միսակը վազեց քրոջ մոտ, որը դիտում էր երեխաների պարը:

— Քույրի՛կ ջան, քույրի՛կ, ինձ պաղպաղակի փող տուր, շատ եմ խնդրում:

Քույրը այս անգամ տվեց անհապաղ: Նա միայն ասաց.

— Հեռու չգնաս, ես այստեղ կսպասեմ քեզ, շո՛ւտ արի:

Միսակը պաղպաղակ գնեց, բերեց հրամցրեց Ձմեռ պապին: Ձմեռ պապի աչքերը լցվեցին: Նա գլխով, ձեռքերով հրաժարվելու նշաններ արեց, բայց Միսակի պարզած ձեռքը այնքան անմեղ էր, բարի, աչքերը այնպես շոյում էին, որ չկարողացավ մերժել, որովհետև մերժումը պիտի ցավ պատճառեր երեխային:

Ձմեռ պապը ուտում էր պաղպաղակը, և Միսակը լուռ նստել էր նրա կողքին:

— Դու ինչո՞ւ չես ուտում,— հարցրեց Ձմեռ պապը:

— Այսօր շատ եմ կերել,— ասաց Միսակը: Հետո՝ հարցրեց.— Ձեզ վրա շա՞տ բարկացան պաղպաղակը ծրի վաճառելու համար:

— Այո՛, շատ բարկացան,— ասաց Ձմեռ պապը:— Ասացին, որ մինչև փողը չմուծեմ, իրավունք չունեմ հեռանալու քաղաքից:

— Ինչպե՞ս պիտի անեք:

— Չգիտեմ:

— Սպասեցե՛ք,— հանկարծ գոչեց Միսակը,— ոչ մի տեղ չգնաք, ես հիմա կգամ:

Եվ նա վազեց դեպի պարերի հրապարակը:

Ձմեռ պապը իր տեղում նստած մնաց: Մի պահ նա նկատեց, որ նվագը դադարեցրել են: Հետո անորոշ լսվեց մի տղայի սուր ձայն, որը երեվի հնչում էր բեմահարթակից: Հետո ծափեր, աղմուկ-աղաղակ: Շատ չանցած, ծառուղու ծայրին երևաց առաջացող երեխաների հոսանքը: Առջևից գալիս էր Միսակը՝ երկու ափերի մեջ պահած իր գլխարկը, որը լի էր ինչ-որ ծանրությամբ: Նրանք հավաքվեցին Ձմեռ պապի շուրջը, և Միսակը ասաց.

— Վերցրե՛ք, Պաղպաղա՛կ պապի, բոլոր երեխաների կողմից...— նա պարզեց մանր դրամներով լեցուն իր գլխարկը:

Ձմեռ պապը հուզված էր: Նա ձեռքերը տարածեց բոլորին գրկելու մի շարժումով և խզված ձայնով ասաց.

— Շնորհակալությո՜ւն, երեխաներ:

Այս ամենը իրոք պատահե՞լ է, թե՞ հորինված պատմություն է միայն, մի՞թե դա է կարևորը: Գուցե ոչ մի Ձմեռ պապ էլ չի եղել, ոչ էլ նա ամառը եկել է քաղաք. և միայն գոյություն է ունեցել մի տարօրինակ ծերունի, որը շատ էր սիրում երեխաներին:

# ԹԵ ԼԱՎ ՍՈՎՈՐԻ ԴԱՍԵՐՆ ԱՌԱՋԻՆ



ՎԱՀԱԳՆ ԿԱՐ...

Նա ուրա՜խ-ուրա՜խ եկել է դասից.  
Բայց առաջվա պես խաղով չի տարվել.  
Նա ուզում է, որ հենց այդ օրվանից  
Իր օրագրում «հինգերը» շարվեն:

Առաջին օրը գնգաց ու անցավ,  
Կանցնեն օրերը և սեպտեմբերի,  
Ու գալիք ամեն մի օրը պայծառ  
Մի նոր երազանք ու գործ կբերի:

Շուրջը խաղաղ է և ոչ մի շշունջ.  
Նա իր սեղանը չի լքի երբեք.  
Առաջին օրն իսկ նստել է նա լուրջ  
Ու պատրաստում է դասերը մեկ-մեկ:

Եվ սկսվում է նոր տարին ահա,  
Գրում է տետրի առաջին էջին.  
Բոլոր դասերը նա լավ կիմանա,  
Թե լավ սովորի դասերն առաջին:



Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@

# ՃԱՆԱՊԱՐՀԻ ԵՐԳ

ԲԱՋԻԿՅԱՆ ՌԱՖԻԿ

Տուն ենք դառնում ճամբարից
Երգերով զվարթ,
Ժպտում են մեզ բոլորիս
Լեռները հպարտ։

Փոխում է մեր մեքենան,
Տե՛ս, ընթացքը իր.
Ո՞ւր են լեռները. չկա՜ն,
Դաշտեր են, նայի՛ր։

Շուտով մեր դեմ կփռվի
Երևանը մեր.
Նա մեզ ողջույն կհղի,
Ու մենք էլ՝ իրեն։

— Մնա՛ք բարո՜վ,— կասեն մեզ
Լեռները հեռվից։
— Ջա՜ն, Երևան, ողջույն քեզ,—
Կերգենք ցնծալից։

# ՌԱԴԻՈԸՆԴՈՒՆԻՉԸ

ԷՆՈ ՌԱՈՒԴ

Տատիկը շուկա գնաց և երկուսիս՝ ինձ ու Պետերին, թողեց տանը։ Գնալիս նա ասաց.

— Դու, Էնն; մեծ ես Պետերից, լավ նայիր նրան։ Խելոք եղեք և մուրաբային ձեռք չտաք։

— Ձեռք չենք տա,— խոստացա ես։

Երբ տատիկը գնաց, մենք սկսեցինք խաղալ։ Սկզբում «ավտո-ավտո» խաղացինք, հետո՝ «դպրոց-դպրոց»։ Բայց կարո՞ղ ես Պետերի հետ երկար խաղալ։ Չէ՞ որ նա դեռ շա՜տ փոքրիկ է, ընդամենը չորս տարեկան։ Նրան ամեն ինչ այնպե՜ս շուտ է ձանձրացնում։ Հետո մենք մի գիրք նայեցինք, որի մեջ շատ նկարներ կային։ Բայց շուտով գիրքն էլ հոգնեցրեց։

Այդ ժամանակ ես ասացի.

— Եթե մենք ռադիոընդունիչ ունենայինք, կարող էինք լսել։




Բայց մենք ռադիոընդունիչ չունեինք։ Հետո մըտածեցի, որ լավ կլինի, եթե «ռադիո-ռադիո» խաղանք։ Պահարանի հետևը մի մեծ, դատարկ ճամպրուկ կար։ Ես ճամպրուկը քարշ տվեցի մինչև սենյակի մեջտեղը և մտա մեջը։ Իսկ Պետերին պատվիրեցի չխկացնել փականքները, իբր թե դըրանք ռադիոընդունիչի կոճակներն են։

Ես սկսեցի ճամպրուկի մեջ խոսել ու երգել։ Հետո խոսեցի ու երգեցի օտար լեզվով, ճիշտ այնպես, ինչպես անում է իսկական ռադիոընդունիչը։

Այդպես մենք բավական ժամանակ «ռադիո-ռադիո» խաղացինք։ Հետո ճամպրուկի մեջ շունչս

digitised by A.R.A.R.@

սկսեց կտրվել, և ես Պետերին ասացի.

— Դե հիմա բաց արա։

Բայց Պետերը ինձ պատասխան չտվեց։ Սենյակում լռություն էր տիրում։

Ես բռունցքով հարվածեցի ճամպրուկի կափարիչին և բարձր գոռացի.

— Լսի՛ր, Պետեր, բաց արա։

Պետերը անմիջապես բացեց կափարիչը։

— Հետաքրքիր խաղ է, չէ՞,— ասացի ես։

Բայց Պետերը մինչև անգամ չնայեց իմ կողմը և միայն ասաց.

— Ես մուրաբային ձեռք չեմ տվել։

Անմիջապես վատ զգացի. ես հասկացա, որ Պետերը մուրաբային ձեռք է տվել։ Այո, հենց այդ-է որ կա։ Նրա շրթունքներին մուրաբա էր քսված։ Ես գնացի ստուգելու խոհանոցի պահարանը։ Ինչ ճիշտ է, ճիշտ է. Պետերը այդ միջոցին կերել էր մուրաբայի կեսը։ Ես ինձ ավելի վատ զգացի, չէ՞ որ տատիկիս խոստացա, որ կհետևեմ Պետերին և մուրաբային ձեռք չենք տա։ Բայց հիմա ամեն ինչ կորած է։ Եվ վշտից ես էլ մի քանի գդալ մուրաբա կերա ու հետո Պետերի հետ միասին սկսեցինք մտածել, թե ինչ պիտի ասենք տատիկին, երբ որ նա տուն գա։ Վերջ ի վերջո որոշեցինք տատիկին ամեն ինչ պատմել այնպես, ինչպես որ եղել է։

Երբ տատիկը վերադարձավ, պատմեցինք, թե ինչպես ես «ռադիո-ռադիո» խաղացի, իսկ Պետերը այդ ժամանակ կերավ մուրաբան։ Երևի այդ «ռադիո-ռադիո» խաղը ուրախացրեց տատիկին, քանի որ նա ծիծաղեց և բոլորովին էլ չզայրացավ։ Եվ քանի որ տատիկը ծիծաղեց, ապա խոստովանեցի, որ ես էլ վշտից մի քանի գդալ մուրաբա կերա։

*Ռուսերենից թարգմ.*
*ԷԴ. ԱՎԱԳՅԱՆ*



Մայիս
ԱՆՆԵ ՀՈԼԼԱՆԴ (Տալլին, 5-րդ դասարան)



Հոգատարություն
ԱՆՈՒ ԼՈԿԿԵ (Տալլին, 4-րդ դաս. աշակերտ)

digitised by A.R.A.R.@



Սիրեք, մանուկներ, ամեն ժամանակ
Երկրի ու մտքի այս նոր ձեռնարկը.
Ձեզ չի պատմելու ոչ մի ծիծեռնակ,
Ինչ որ պատմում է այս «Ծիծեռնակը»

# ԾԻԾԵՌՆԱԿ

digitised by A.R.A.R.@

Սիրելի երեխաներ, մեր այս ամսի «Ծիծեռնակը» նվիրված է մանուկների ստեղծագործություններին, որտեղ իրենց նկարներով հանդես են եկել Հակոբ Կոջոյանի անվան նկարչական դպրոցի շնորհալի աշակերտները:

Նախորդ էջի նկարը՝ «Նորակառույց քաղաք» ԱՇՈՏ ՀՈՎՍԵՓՅԱՆԻ, 13 տարեկան

## ԻՍԿ ԻՆՁՈ՞Ւ ՄԻԱՅՆ ԵՍ...

Ֆրանսերեն լեզվի դաս է։ Գիտեմ, որ այսօր ինձ դաս կհարցնի ընկեր Մկրտչյանը, որովհետև ոչ ոք չի սովորել։ Իսկ երբ չեն սովորում, նա միշտ ինձ ասում է.

— Լալա՛, կարդա, թող սովորեն։

Մեր աշակերտները այս խոսքերը լսելիս՝ սկսում են միմյանց հետ փսփսալ։ Դե, մի՞թե պարզ չէ, թե ինչ են խոսում նրանք։ Բայց կարևորը այդ չէ. երբ կարդում վերջացնում եմ և բոլոր հարցերին պատասխանում, իրենք ասում են.

— Սը՛նք։

Այսինքն՝ «5»։ Բայց դա ասում են ոչ թե ուրախությամբ, այլ՝ քմծիծաղով, իբր թե ինձ բարձր են նշանակում։

Կատուրինե ՍԱՐԳՍՅԱՆ ՍԵՐԳԵՅ 14 տ.



digitised by A.R.A.R.@

Իսկ այսօր նորից ինձ դաս կհարցը-նի ուսուցչուհին, որովհետև ոչ ոք չի սովորել: Եթե հարցնի, ի՞նչ անեմ, գոնե թող մեկ օր էլ «4» ստանամ, միայն թե էլ չփսփսան... Ես որոշում եմ. եթե ինձ հարցնի, սխալ կկարդամ... Բայց ահա ու տես, որ տետրերն է բա-ժանում. ուրեմն՝ գրավոր աշխատանք է: Թելադրություն: Ես վերցնում եմ գրիչը, թաթախում թանաքամանի մեջ և սկսում գրել: Ու չորս կողմից մեղվի բզզոցների նման լսվում է.

— Լալա՛, ասա...

— Վերջում՝ է՞:

— Սպաթա՞րը, թե՞...

Ես ասում եմ, ասում այն բանի համար, որ էլ չփսփսան, էլ իմ կար-դալու ժամանակ Զարիկը չասի.

— Լալայի կարդալու ժամանակ ե-րեխաները ինչու՞ են լսում...

Նա նայում է, ծիծաղում, խոսում... Ես հուշում եմ աշակերտներին, ա-սում այն ամենը, ինչ պահանջվում է, իսկ ընկեր Մկրտչյանը ինձ նստեց-նում է վերջին շարքի վերջին ան-կյունում: Երեխաները ստիպված են օդի մեջ գրել հուշող հարցը, ես էլ ստիպված եմ հուշել...

Հաջորդ օրը, ֆրանսերեն լեզվի ժամին, ընկ. Մկրտչյանը կարդում է իմ համարը: Ես դեռ չեմ սկսել, երե-խաները պահել են շունչը, լռությունն է թագավորում դասարանում: Ես խախտում եմ այն՝ իմ բարձր, ազդու ձայնով, կարդում եմ այնպես, ինչ-պես հարկն է, թարգմանում եմ տեքս-տը, պատասխանում տված հարցե-րին և մեկնում օրագիրս.

Սո՛ւսք...

Ու կրկին շարունակվում են



Գյուղ ԳՅՈՒԼԱՄԻՐՅԱՆ ՆԵՆԵ, 12 տ.

digitised by A.R.A.R.@

փափսոցները։ Ես մտածում եմ. «Եթե ես չշարունակեմ, գուցե նրա՞նք էլ չշարունակեն...»

Հաջորդ ֆրանսերեն լեզվի ժամին ոչ մեկի հարցին չեմ պատասխանում։

— Չգիտեմ, այսօր չեմ սովորել...

Զարիկը բռնկվում է.

— Գիտե՛ս...

Ես տխրում եմ և դասարանում լաց լինում։ Փոքր չեմ, բայց և մեծ էլ չեմ, ցավն այն է, որ չգիտեմ լացիս պատճառը, տխուր եմ, պատճառն անհայտ է, իսկ ես...ես...

— Լալա՛, արի բառերը գրիր,— ասում է ընկեր Մկրտչյանը։ Ես դանդաղ քայլերով մոտենում եմ գրատախտակին։ Դեռ մի բառ չգրած՝ լսում եմ.

— Ի՞նչ է, ամեն անգամ սա է բառ գրում, դրա համար էլ լավ է սովորում...

Կավիճը ձեռքիցս ընկնում է հատակին, փշուր-փշուր լինում։ Սկըսում եմ արտասվել։

— Ինչու՞,—հարցնում է ընկեր Մըկըրտչյանը։

— Եթե...գրատախտակին բառ գրելով են դաս սովորում, ապա, ապա... Թող ամեն օր էլ նրա՛նք գրեն, իսկ մեր տանը գրատախտակ չկա,—և փղձկալով նստեցի վերջին նստարանի վրա, մեն-մենակ...

Ես այնքա՜ն կուզեի երեխաներին դասերից հետո օգնել, գրուցել, ընկերաբար խորհուրդ տալ, իսկ այսօր. Այսօր նորից ես պետք է կարդամ, որովհետև ոչ ոք դարձյալ դաս չի սովորել։ Իսկ ինչու՞ միայն ես...

ԼԱԼԱ ՄԱԼԽԱՍՅԱՆ
(Ապարան)



Ճեպանկար
ԳԱՍՊԱՐՅԱՆ ԺԱՆՆԱ, 14 տ.

## ՀԱՅՐԵ՜ՆԻՔԻՍ

Քո մեջ են բոլոր լույսերը կյանքիս,
Իմ մանուկ սիրտը քեզնով է խնդում,
Քո արևաշող դրոշը ձեռքիս՝
Հավատով դեպի բարձունք եմ տանում։

Քեզնով է մարդը երկինք խոյացել,
Բացել գաղտնիքը անհաս աստղերի,
Քեզնով այնպիսի խարույկ է վառել,
Որ այս աշխարհում երբեք չմարի։

ԱՐՍԵՆ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ
Երևանի № 20 երիկոյան դպրոցի աշակերտ

digitised by A.R.A.R.@



Այս փոքրիկ աղջիկն ապրում է Բուլղարիայի Պլովդիվ քաղաքում։ Նա դեռևս նոտաները կարդալ չգիտե, բայց այնպես լավ է դաշնամուր նվագում, որ հիացնում է ունկնդիրներին։

— Ես ուզում եմ դաշնակահարուհի դառնալ,— ասում է նա։

Էմմա Թահմիչյանը 6 տարեկան է։

*Լուսանկարը՝*
*ՄԱՐՏԻԿ ՀԱՔԵՔՅԱՆԻ*
*(Բուլղարիա, Պլովդիվ)*

Ծառեր

ՂԱԶԱՐՅԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ, 10 տ.

digitised by A.R.A.R.@



Նատյուրմորտ
ՕՀԱՆՅԱՆ ՍԵՐԳԵՅ, 14 տ.



Գարուն
ԽԱՉԱՏՐՅԱՆ ՎԱՐՈՒԺԱՆ, 11 տ.

digitised by A.R.A.R.@

# ՋՈՒՆԳԼԻՆԵՐԻ ՆԱՀԱՆՋԸ

*Բրազիլական լայնարձակ սարահարթում, ինչպես անսահման մի օվկիանոս, մոլեգնում էր մի վիթխարի հրդեհ: Նրա ծուխը մթագնել էր երկինքը: Կենդանիները խուճապահար փախչում էին այդտեղից և մտնում այն վայրերը, որտեղ չէր հասել հրդեհը: Թվում էր, թե սա է աշխարհի վերջը: Թռչունները աղեկտուր ճիչերով պտտվում էին իրենց բների շուրջը՝ ձագերին փրկելու համար, բայց կրակը անողոք դևի նման լափում էր իր բերանի տակ ընկած ամեն ինչ և առաջ էր սլանում:*

*Մարդը գրոհում էր բնության դեմ: Դա ասես կուտակված գայրույթն էր տենդից հյուծված, իժերի սոսկալի ատամների խայթից մահացած բազմաթիվ մարդկանց:*

*Այնտեղ, ուր առաջ ջունգլիներն էին գերված լիանաների մեջ, ուր երկինքը սևանում էր մոծակների հոծ ամպերից, շուտով պետք է խոյանային հոյակերտ քաղաքներ՝ զարդարված ծաղկափթիթ պարտեզներով և արգավանդ արտերով:*

*Օգոֆորթը կանգնել էր մի բլրի գագաթին և դիտում էր ամեն ինչ կլանող հրդեհը: Այդ խորհրդավոր կուսական անտառներում էին ապրել նրա նախահայրերը գուցե, ա՛յ այնտեղ, այն հեռավոր բացատում խարույկի շուրջը մոլեգնել էր նրանց խելահեղ պարը՝ հաջող որսից հետո... Իսկ հիմա հրկիզվում, մոխրանում էր այդ հիասքանչ անտառը, որի ամեն մի ծառի հետ մի թանկագին հուշ էր կապված:*

*— Ինչքա՜ն գեղեցիկ կլինի այս վայրը տասը տարի հետո: Ո՞վ կարող է երևակայել, որ այստեղ պետք է տարածվեն Ջենդրոտենիա քաղաքի երկնաքերծ շենքերը, — ասաց Օգոֆորթի ընկերը:*

*— Այս վայրերը ավելի գեղեցիկ էին առաջ,— հոգոց հանելով նկատեց Օգոֆորթը:*

*— Էհ,— արհամարհանքով ծոր տվեց ընկերը,— ի՞նչ ես տեսել դու այստեղ, այս խուլ անտառներում փակված: Այ, գնա Ռիո-Դե-Ժանեյրո, Բուենոս-Այրես...*

*Օգոֆորթի դեմքին երևաց մի այնպիսի հեգնական ժպիտ, որով սովորաբար պատասխանում են տգետներին:*

*— Այս անտառը հարազատ է ինձ, ինչպես հարազատ մայրը: Թե՛ նրա ծառերը, թե՛ նրա սոսափը, թե՛ շառաչը և թե՛ հնդիկները, այդ հրաշալի, պարզ ու անկեղծ մարդիկ: Ես նկարիչ եմ, նկարել եմ ջունգ-*



digitised by A.R.A.R.@

լիների հարյուրավոր բնանկարներ և դեռ այնքան պիտի նկարեի... Բայց՝ ահա կիսավարտ մնաց իմ կտավաշարքը։

— Ուշինչ, կսկսես քաղաքը նկարել։

Բայց Օդոֆորթը չլսեց ընկերոջ ասածը։ Նա հեռվում նկատեց մի բան, որի պատճառով նրա զգայուն սիրտը ճմլվեց և աչքերից ցած գլորվեցին բրազիլական երկնքի պես վճիտ արցունքներ։

Կրակը օղակել էր մի բացատ։ Նրա մեջ փակված էր մնացել մի գեղեցիկ եղնիկ, նրա քնքուշ մարմինը դողում էր վախից։ Նա աշխատում էր դուրս պրծնել մահվան օղակից, դես ու դեն էր ընկնում, բայց իզուր։ Հրդեհի բոցեղեն լեզուները, հրճվելով իրենց չքնաղ զոհի անզորությունից և միաժամանակ խանդելով նրա չնաշխարհիկ տեսքին, դանդաղորեն մոտենում էին։

Օդոֆորթը սկսեց վազել ներքև, շիկացած մոխիրների վրայով։ Կապտավուն ծուխը կսկծացնում էր աչքերը, անտանելի ջերմությունը խեղդում էր նրան, բայց նա վազում էր, վազում։ Վերջապես նա նետվեց բոցերի մեջ։ Գրեթե կուրացած և կիսախեղդ՝ նա իրեն գցեց բացատը, այրվող զգեստները հանգցնելու համար մի քանի անգամ թավալվեց գետնին, հետո վերցնելով ուշակորույս եղնիկին, դուրս պրծավ մահվան օղակից։

Երբ անցան վտանգավոր գոտուց, Օդոֆորթը ուժասպառ տապալվեց շիկացած մոխիրների վրա։ Եղնիկը բացեց իր նշաձև աչքերը և իր թախծոտ հայացքը հառեց փրկարարի անշարժ մարմնին, մի րոպե կանգնած մնաց, հետո սլացիկ և թեթև վազքով անհետացավ հորիզոնում։

Օդոֆորթը մեծ ճիգով բացեց աչքերը, վերջին անգամ գուրգուրանքով նայեց նրա հետևից... Իսկ նկարչի ընկերը, բլրի վրա կանգնած, սրբում էր ծխից, թե՞ հուզմունքից վայր գլորվող արցունքները և բութ հայացքով նայում հրդեհվող անտառին։ Հետո հանկարծ պոկվեց տեղից և սկսեց վազել ցած՝ դեպի Օդոֆորթը...



* * *

Կույր նկարչի տանը հավաքվել էին բազմաթիվ արվեստասերներ, թղթակիցներ։ Լսվում էին շնորհավորական և հիացական խոսքեր.

— Պարոն Օդոֆորթ, ձեր ցուցահանդեսը ամենագեղեցիկն է մինչև հիմա եղածների մեջ։

— Եվ ինչպե՞ս եք դուք դրսևորել ջունգլիների առանձնահատկությունները։

Օդոֆորթը մռայլ բազմել էր բազկաթոռին և տհաճությամբ լսում էր շնորհավորանքները։ Նա հոգնել էր այդ բոլորից և աշխարհը նրան թվում էր կեղծ և շինծու։

Մի թղթակից հարց տվեց.

— Իսկ դուք, պարո՛ն Օդոֆորթ, ո՞րն եք համարում ձեր ամենալավ կտավը։

Օդոֆորթը բարձրացավ տեղից, և ներկաները զգացին, որ այդ հարցը գրգռեց նրա երևակայությունը։

Նրա աչքերի առաջ գծագրվեց մի պատկեր։ Փրկված եղնիկի թեթև վազքը մոխիրների վրայով՝ այրվող անտառի ֆոնին։ Այդ պատկերը տանջում էր նրան և ավելի ու ավելի էր խորանում նրա երևակայության մեջ։

— Փրկված եղնիկը, — շշնջաց նա։

Բոլորը տարակուսանքով նայեցին իրար։

— Այդպիսի ստեղծագործություն դուք չունեք, — ասաց թղթակիցը։

— Ներեցեք ինձ, բայց դժվար թե հասկանաք, — սկսեց նկարիչը։ — Այն օրից, ինչ ես այրվող անտառի միջից դուրս բերեցի այդ քնքուշ արարածին, հանգիստ չունեմ։ Այն օրից ես ցանկություն եմ զգում կտավի վրա դրոշմել այդ ամբողջ տեսարանը։ Ես արդեն տեսնում եմ գույները իրենց բոլոր նրբերանգներով, կտավը իմ վրձնի հարվածների տակ ամբողջությամբ ձև է առել իմ մտքում, նա կա, նա բաբախում է, շնչում է, բայց...

Օդոֆորթը լռեց մի պահ, ավելի մթագնեց, ձայնը դողաց.

digitised by A.R.A.R.@



Նկարազարդումը՝ ՎԱՀԱՆ ՔՈՉԱՐՅԱՆԻ, 15 տ.

— Բայց...աչքերս, աչքերս...հասկանու՞մ եք,— աղաղակեց նա։— Այրեք իմ բոլոր կտավները և կյանքս կարճացրեք քսան տարով, միայն գեթ մի շաբաթով ետ տվեք աչքերս՝ միայն այդ պահը դրոշմելու համար։ Զրկեցեք նկարչին զույգ ոտներից, այլանդակեցեք նրան, բայց մի խլեք նրանից աչքերն ու ձեռքերը։

Ծայրահեղ լարումից ուժասպառ նկարիչը փլվեց բազկաթոռին, և շատերին թվաց, թե նա սկսեց զառանցել.

— Օ՜, աչքեր, աչքեր... ե՜տ տվեք իմ աչքերը։ Փրկված եղնիկը...

Օզոֆորթը գլուխը հենեց զույգ ափերին և դառնորեն հեծկլտաց։

Բոլորը լուռ էին և ճնշված։

ՎԱՀՐԱՄ ԹԱԹԻԿՅԱՆ

Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ



digitised by A.R.A.R.@

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԵՍ ԱՆՏՈՄՍ ՏՈՒՆ ՀԱՍԱ

Ուրախ գիշեր էր, և ես սուլելով գընում էի։ Մոտս կար մեկ կոպեկանոց ու մեկ էլ տաս կոպեկանոց, և ես ուրախ սուլում էի։ Հանկարծ զգացի թաշկինակի պահանջ և հանեցի այն։ Քիթս սրբելիս, լսեցի ընկնող դրամի ձայնը։ Ուզեցի ետ դառնալ ու վերցնել, բայց նկատելով մոտեցող երեք աղջիկների, որոնք ինձ էին նայում, սուլելով հեռացա։ Քիչ հետո քրքրելով գրպաններս՝ գտա միայն մեկ կոպեկանոցը, ստիպված էի ահագին ճանապարհ ոտքով գնալ։

Ինձ թվաց, թե մարդիկ տխրում են, իսկ լույսերը՝ խամրում։ Ես սկսեցի զանազան պլաններ մշակել, թե ինչպես կարելի է անտոմս տուն հասնել։ Կային զանազան պլաններ, բայց դրանցից ամենահաջողը թվում էին երկուսը։ Մեկ, որ կարող է ինձ ծանոթ մարդ պատահել, իսկ մյուսը՝ քիչ զայրացած պետք է տոմսավաճառին ասել.

— Ի՞նչ է, երկրորդ անգա՞մ պետք է տոմս ստանամ։

Կամ.

— Առջևում ինձ համար ստացել են արդեն։

Եվ այսպես, արտաքուստ հպարտ, իսկ ներքուստ՝ խղճուկ, առանց դրամի, ընտեցի ավտոբուս, որը արագորեն լցվեց մարդկանցով։ Մեքենան շարժվեց։ Ես ամեն մարդու մեջ որոնում էի ծանոթ դիմագծեր, բայց ամենքն էլ սառն էին ու անծանոթ։ Շուտով երևաց տոմսավաճառը. մի փոքրիկ կին, շեկ մազերով, հանգած ու անգույն աչքերով։ Նա միալար աղմկում էր.

— Տո՛մս ստացեք...

Բարձր հասակս թաքցնելով մարդկանց հետևում՝ ձեռքս գրպանս տարա, այնտեղից հանեցի ինչ-որ թղթի կտոր ու պահեցի ձեռքումս։ Բայց որքան տոմսավաճառը մոտենում էր, ես ավելի էի անհանգստանում։ Ավտոբուսի հասարակությունը քանի գնում, այնքան դառնում էր անորոշ ու գորշ մի զանգված։ Եվ շուտով մարդկային այդ անորոշ ու գորշ զանգվածի միջից երևաց տոմսա-



Նկարը՝
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԱՇՈՏ, 11 տ.

digitised by A.R.A.R.@



«Աղվեսը» հեքիաթի նկարազարդումներից — ՂԱԼԹԱԽՉՅԱՆ ՍԱՄՎԵԼ, 11 տ.

վաճառի փոքրիկ ու կապույտ ձեռքը, և հնչեց նրա անողորմ ձայնը.

— Տո՛մս ստացեք...

Ես չգիտեմ, թե ինչպես ցույց տվի թղթի ճմրթված կտորը և զբաղված մարդու տեսք ընդունելով՝ ասացի.

— Ես արդեն ստացել եմ...

Կապույտ ու փոքրիկ ձեռքը չքացավ... Դեմքիս վրա զգացի քամու մեղմ շոյանքը: Քիչ հետո պայծառացող լույսերի տակ սկսեցի մարդկային անորոշ ու գորշ զանգվածից զանազանել նրանց ժպտացող դեմքերն ու շարժուն ձեռքերը, իսկ հետո նաև ուրախ կեցվածքը:

Շուտով ես իջա մեքենայից: Ճանապարհին, ռեկլամների զվարթ գույներից, ամպերի տակից նայող լուսնի ցոլքերից և թարմաշունչ օդից ոգևորված՝ ես փորձեցի կրկին սուլել բարձր և ուրախ: Բայց այն աղավաղվեց ու մարեց. տրամադրությունս ջարդված էր, արժանապատվությունս՝ վիրավորված:

Ահա թե ինչպես ես անտոմս տուն հասա:

ԳԱԳԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ

*Գեղարվեստական ուսումնարանի 3-րդ կուրսի ուսանող*



digitised by A.R.A.R.@



Իմ ընկերուհին

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ԱՆԱՀԻՏ, 13 տ.



Ձեպանկար

ԻՆՃԻԿՅԱՆ ԱՐՓԻԿ, 12 տ.

Պատուհանի մոտ

ԱԹԱՆԵՍՅԱՆ ԺԻՐԱՅՐ, 14 տ.

digitised by A.R.A.R.@

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻՆ

Մեծ Հոկտեմբերի արևն է շողում
Մեր հայրենական խաղաղ երկնքից,
Դրոշակները զվարթ փողփողում
Ու ծածանվում են մեր ուրախ երգից։

Թող որ աշխարհի բոլոր մասերում
Բացվեն այսպիսի օրեր արևոտ,
Աշխարհն էլ շողա մեր այս լույսերում,
Որպես մի պայծառ, լուսե առավոտ։

Ու ամեն անգամ այս պայծառ տոնին
Թող մարդիկ քայլեն ալ դրոշ բռնած,
Կյանքի գարունն այս ժպտա բոլորին,
Խաղաղությունը ճախրի թևաբաց։

*ՌՈՒԴԻԿ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

*Սևանի միջն. դպրոցի աշակերտ*



Էտյուդ
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ ԳՐԻԳՈՐ, 13 տ.



Ձմեռ
ԱՐԱՄՅԱՆ ԴԱՅԱՆԱ, 13 տ.

# ԱՔԼՈՐԻ ՎԻՇՏԸ

— Սիրուն, նախշուն մեր աքլոր,
Ի՞նչ ես կանգնել գլխիկոր:
Գուցե տատը մեր բարի,
Քի՞չ է տվել քեզ գարի:

— Չէ՛, տատիկը մեր բարի,
Քիչ չի տվել ինձ գարի.
Ինձ քարով էլ չեն խփել,
Միայն պատվիս են կպել:
Այն անպիտան Արթուրը
Պոկեց պոչիս փետուրը:

*ԱՆԱՀԻՏ ԹԱՐՅԱՆ*

*Երևանի № 82 դպրոցի 5-րդ դասարանի աշակերտուհի*



digitised by A.R.A.R.@

# ՄԱՍՐԵՆԻ

Դու կանաչել ես, փոքրիկ մասրենի,
Մի բուռ հողի մեջ լեռան կատարին։
Իմ ծանոթ, ծանոթ, ծանոթ մասրենի,
Դու կանաչել ես, խնդում ես կրկին։
Ինչքա՜ն նման ես իմ երազներին.
Այսօր կանաչ ես, վաղը կշիկնես
Ու արևի տակ ժայռին կթիկնես։

*ՄԱՐԱՏ ԴԻԼԱՎՅԱՆ*
*Գորիս, Բակունցի անվան միջնակարգ դպրոցի աշակերտ*



Նատյուրմորտ
ԱՂՎԱՆՅԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ, 10 տ.

Մայրություն ՍԱՎԱՅԱՆ ՌՈՒԲԻԿ, 15 տ.

digitised by A.R.A.R.@

Տրվում է անվճար՝ «Պիոների»
9-րդ համարի հետ

# ՕՐՕՐՈՑԱՅԻՆ

Lento

V-cello

Piano

ԳՐԻԳՈՐՅԱՆ ԿԱՐՈ, Երևան, 15 տարեկան





digitised by A.R.A.R.@

Ուրախ օր

ՏՈՅՎՈ ՎԱՀԵՐ (Տալլին, 2-րդ դասարան)



# ՔՈ ՏԱՏԻԿԸ

*ԱՆՆԱ ԽԱԱՎԱ*

Տատիկը քո բարի էր, ծեր,
Սիրալիր էր նա այնքան,
Արևից ջերմ սիրել գիտեր
Մանուկներին դուրեկան։

Հող է տարել, կրթել է քեզ
Եվ այնպես մեղմ գուրգուրել,
Պարզել է ձեռքն իր սիրակեզ
Քո գլուխը փայփայել։

Եվ աչքերը նրա կապույտ
Խնդությամբ են ողողվել,
Երբ որ դաշտում ուրախ, անփույթ,
Փոքրիկ հովիվն է երգել։

Թեև չկա, էլ չի ապրում,
Բայց քեզ հետ է դարձյալ նա.
Հովանի է դեռ. քեզ լինում
Բարի ժպիտը նրա։

Նրա տխուր գերեզմանին
Միշտ ծաղիկներ թող բուսնեն,
Աստղ ու արև նրա շիրմին
Թող հավիտյան լույս սփռեն։

*Ռուսերենից թարգմ.*

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ




digitised by A.R.A.R.@

# ԱՐԱՅԻԿՆ ԱՅԼԵՎՍ ՉԷՐ ԾԻԾԱՂՈՒՄ

ԷՄԱՆՈՒԵԼ ԳԱՍՊԱՐՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Այն ժամանակ, երբ ես տասնչորս տարեկան էի, մի օր հայելու մեջ ինձ զննելուց հետո նկատեցի, որ ձախ այտս աջ այտիս համեմատությամբ բավականին փոս է ընկած: Մինչ այդ ես այդպես ուշադիր չէի նայել ինձ: Գուցե այդ մասին բոլորովին էլ չմտածեի, եթե Մարինեն չնստեր իմ ձախ կողմի նստարանին: Ճիշտ է, նա ինձ վրա ուշադրություն էլ չէր դարձնում: Նա չէր էլ նկատում, որ ես նըստած էի իր աջ կողմի նստարանին: Բայց և այնպես ես չէի ուզում նրա աչքին տգեղ երևալ:

Դասերի ժամանակ ես նստում էի՝ ձեռքով այտս ծածկած, որպեսզի նա դեմքս ձախ կողմից չտեսներ: Դրա համար ուսուցիչներն ինձ հաճախ նկատողություն էին անում: Այն ժամանակ ես իջեցնում էի ձեռքս, բայց հինգ րոպե չանցած, նորից ծածկում էի այտս: Երբեմն էլ մատներիս արանքով



գաղտագողի նայում էի, թե արդյոք Մարինեն ինձ չի՞ նայում: Բայց նա երբեք իմ կողմը չէր նայում: Նա նայում էր հարևան նստարանին նստող Արայիկին:

Այդ րոպեներին ես ինչպե՜ս էի Արայիկին նախանձում... Ես նախանձում էի նրան իր գեղեցիկ շորերի ու միշտ նոր կոշիկների համար: Իսկ ամենից շատ նախանձում էի նրան այն բանի համար, որ նա բոլորից շուտ էր խնդիրները լուծում:

Ա՜յ թե ես էլ ուժեղ լինեի թվաբանությունից: Այն ժամանակ ես ցույց կտայի այդ Արայիկին...

Մեր դպրոցի բակում մի քանի լայնատերև ծառեր կային: Երկու օրում քամին այնքան տերև էր թափել ցած, որ գետինն այլևս չէր երևում: Երկու ավագ դասարանների աշակերտներին հանձնարարվեց դպրոցի բակը մաքրել: Ես էլ ընկերներիս օրինակով աշխատում էի ցախավելը ձեռքիս, երբ հանկարծ նկատեցի, որ Մարինեն իմ կողքին է: Երբեք չէի կարծում, որ Մարինեն կհայտնվեր իմ կողքին: Մի տեսակ ուրախացա: Բայց երբ նայեցի ձեռքիս ցախավելին, մտածեցի, թե որքան ծիծաղելի եմ այժմ նրա աչքին: Տղամարդկային արժանապատվությունը գլուխ բարձրացրեց իմ մեջ: Դեն շպրտեցի ցախավելն ու ասացի.

— Է՜հ, սա ի՞նչ տղամարդու գործ է:

Մարինեն արհամարհական նայեց ինձ ոտից-գըլուխ:

—Հի-հի՜,— ծիծաղեց նա,—մի էս տղամարդի՜ս տեսեք: Ծուլլի մեկը:

Հարվածն այնքան անսպասելի էր, որ ես չկարողացա ոչ մի բառ ասել: Ես միայն վախեցած նայեցի շուրջս. արդյոք ուրիշ ոչ ոք չէ՞ր լսել: Իսկ Մարինեն ինչպես հանկարծակի հայտնվել էր, այնպես էլ հեռացավ՝ գետինն ավլելով:

Մենք ապրում էինք դպրոցից բավականին հեռու: Ինչպես ընկերներիցս շատերը, ես էլ հեծանիվով էի դպրոց գնում: Դպրոցի ճամփին, մանավանդ տուն վերադառնալիս, ես աշխատում էի քշել առանց ղեկը բռնելու, ձեռքերս հետևս դրած: Բայց դա ինձ չէր հաջողվում: Ես կորցնում էի հավասարակշռությունս և հաճախ հեծանիվի հետ ցած ընկնում:

Այդպիսի մի օր, երբ դպրոցից տուն էի վերադառնում, հանկարծ մի հարյուր քայլ հեռավորության վրա, տեսնում եմ Մարինեին՝ հեծանիվը բռնած, իսկ Արայիկը, կռացած, հեծանիվի դուրս թռած շղթան է հագցնում:

—Միևնույն է, ես մի օր ձեզանից վրեժ կլուծեմ: Ես ձեզ ցույց կտամ, թե ինչի եմ ընդունակ:

Եվ ձեռքերս հետևս դրած, մարմինս ուղիղ ու քիթըս վեր ցցած, սրկի նման անցա Մարինեի կողքից: Նա վախեցած ետ թռավ: Ինձ անչափ ուրախացրեց Արայիկի զարմացած հայացքը: Էլ ավելի



digitised by A.R.A.R.@

ուրախացրեց Մարինեի վախը: Բայց ամենից շատ ինձ ուրախացրեց իմ անսպասելի հաղթանակը: Հեծանիվս կարծես թև էր առել...

Իսկույն չքացան վախի ու նախանձի այն զգացումները, որոնք հաճախ տիրում էին ինձ դասարանի անկյունում նստած ժամերին: Ի՜նչ խոր անդունդ կար այսօրվա Արսենի ու երեկվա այն Արսենի միջև, որը դպրոցի բակում ամոթահար եղած, չորացած տերևներն էր ավլում:

«Ինչքան լավ կլիներ, եթե դպրոցում էլ ինձ ըզգայի այնպես, ինչպես հիմա՝ հեծանիվի վրա,— մտածում էի ես,— ա՛յ թե բոլորը կզարմանային...»

Դժբախտաբար դա անհնարին էր: Չէ՞ որ դպրոցում Մարինեին ու մյուսներին զարմացնելու համար հարկավոր էր Արայիկից էլ շուտ խնդիրներն ու վարժությունները լուծել, իսկ ես...

Բայց չէ՞ որ հեծանիվ քշել էլ չէի կարողանում, նշանակում է՝ աշխարհում անհնարին ոչինչ չկա: Ուրեմն հենց վաղվանից, ո՛չ, հենց այսօրվանից պիտի պարապեմ:

Ես ցույց կտամ այդ Արայիկին:

Ես ցույց կտամ այդ Մարինեին...

Հենց այդ օրվանից սկսեցի պարապել: Եթե առաջ կես ժամում բոլոր դասերս պատրաստում էի և մնացած ժամերին խաղում, այժմ հակառակն էի անում:

Մայրս զարմացել էր ինձ վրա: Ես էլ էի զարմացել: Իսկ հայրս ժամանակ չուներ զարմանալու, որովհետև նա շատ էր աշխատում և քիչ էր տանը լինում:

— Տղադ խելքի է գալիս,— թաքուն շշնջում էր մայրս նրա ականջին, ու հայրս ժպտում էր այնպես, ինչպես կարող են միայն հայրերը ժպտալ.

... Երրորդ քառորդի վերջն էր: Գրատախտակին գրած խնդրին ոչ ոք չէր համարձակվում մոտենալ, մինչև անգամ Արայիկը:

— Մի՞թե չեք հիշում այս խնդրի լուծումը: Անցյալ քառորդում ենք անցել: Դե, համարձա՛կ, Գեղա՛մ, Վարդու՛շ:

Ոչ մեկը չէր համարձակվում վեր կենալ:

— Չեղավ, չեղա՛վ: Դե լավ, Արայիկ, վեր կաց դո՛ւ գնա լուծիր... Ի՞նչ է, դո՞ւ էլ չես կարող...

Ես ուզում եմ տեղիցս վեր կենալ, բայց, չգիտես ինչու, չեմ համարձակվում: Եթե Արայիկն էլ չի կարողանում լուծել... Բայց միաժամանակ խնդիրը թվում է պարզ ու հասկանալի: Ես երեկ լուծեցի նման մի խնդիր: Ու ես գաղտագողի նայում եմ իմ շուրջը: Նայում եմ նախ Գեղամին, Վարդուշին, ապա՝ Մարինեին... Նայում եմ Արայիկին՝ մեր դասարանի չեմպիոնին, ու զարմանում: Բոլորի դեմքին նույն անզոր արտահայտությունն է: Բոլորն էլ սպասում են, թե ով պիտի լուծի: «Սատանան տանի, ինչո՞ւ չեն գնում, մի՞թե չեն տեսնում, որ երկու անհայտով հավասարում է...»

— Ես... գա՞մ:

— Ի՞նչ... Ո՞վ էր,— ասում է ընկեր Վանեսյանը՝ հանկարծ շուռ գալով:

Նրա հետ միասին բոլորը շրջվեցին ու տարօրինակ հայացքով նայեցին ինձ:

— Ո՞վ էր ուզում գալ,— կրկնում է ընկեր Վանեսյանը:

— Ե՛-ես...

— Արի:

Ընկեր Վանեսյանի զարմացած հայացքի և մյուսների քմծիծաղի տակ մոտեցա գրատախտակին: Առաջին պահին ամեն ինչ խառնվեց աչքերիս առաջ: Ե՛վ սպիտակ թվերը, և՛ գունավոր ու սպիտակ կավիճները, որ դրված էին գրատախտակի անկյունում: Բայց անմիջապես սթափվեցի, վերցրի կավիճն ու սկսեցի գրել: Ինչ-որ մեկը ծիծաղեց: Ապա՝ մյուսները... Մի՞թե սխալ եմ լուծում: Ետ եմ նայում: Բոլորը ծիծաղում են, Արայիկը՝ բոլորից ուժեղ: Միայն ընկեր Վանեսյանն է հանգիստ. ժպիտը շուրթերին ինձ է նայում:

— Ոչի՛նչ, ոչի՛նչ,— ասում է նա,— շարունակիր, Արսեն: Ապրես, ճիշտ ես սկսել:

Ոչինչ չհասկանալով կրկին նայում եմ գրատախտակին ու նոր միայն նկատում, որ գրել եմ վարդագույն կավիճով...

Զսպելով ժպիտս՝ վերադառնում եմ դեպի նստարանս:

— Ապրե՛ս, չէի սպասում, ապրե՛ս, Արսեն,— իր գոհունակությունը չթաքցնելով՝ կրկնում էր ընկեր Վանեսյանը:

Արայիկն այլևս չէր ծիծաղում: Ոչ էլ մյուսները: Իսկ Մարինե՞ն... Չգիտեմ: Չնայեցի: Ինչպես միշտ, չկարողացա նրան նայել...



digitised by A.R.A.R.@




# Երկնագույն հուլունքը

ՄԱՐԻԱ ԿՐՅՈՒԳԵՐ
(Լեհ գրող)

## ԲԱՐԵՎ, ԵՐԵԽԱՆԵՐ

Սկսվում է Կարոլինկայի և Պետրիկի արկածների պատմությունը։

Եվ այսպես, դուք կիմանաք, թե ինչ պատահեց հետո, երբ Կարոլինկան մի երկնագույն հուլունք գտավ։ Իսկ դա մի սովորական հուլունք չէր, այլ՝ կախարդական։ Եվ այդ հուլունքի շնորհիվ էր, որ կախարդական դարձավ նաև այն ավտոմեքենան, որով Կարոլինկան գնում էր իրենց նոր բնակարանը։ Նրանց բնակարանը գտնվում էր մի զարմանալի քաղաքում, ուր կարող էին շատ բազմազան և շատ էլ տարօրինակ դեպքեր տեղի ունենալ։ Այդ քաղաքում մի շատ զզվելի անձնավորություն էր ապրում։ Նրա անունը Ֆիլոմենա էր, և նա... երեխաներին չէր սիրում։

Մի խոսքով, այս բոլորը բազմաթիվ արկածների պատճառ դարձան, հոգսեր էլ քիչ չեղան, բայց երկնագույն հուլունքը և բարի ու ազնիվ սրտի տեր Կարոլինկան ու Պետրիկը հաղթահարեցին բոլոր դժվարությունները։ Դե, ինքներդ էլ կտեսնեք և կհամոզվեք դրանում։ Միայն թե շատ կուզենայի, որ դուք էլ սիրեք Կարոլինկային և Պետրիկին, չէ՞ որ դուք էլ նրանց հետ մասնակցելու եք այդ անսովոր պատմությանը։

Բայց դրա համար ամենից առաջ եկեք ծանոթանանք Կարոլինկայի հետ։

## ՆՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Մեր այս պատմությունն սկսվելու ժամանակ արդեն լրացել էր Կարոլինկայի ութ տարին և ութ ամիսը։

Ուզո՞ւմ եք իմանալ, թե ինչպիսին է Կարոլինկան։ Չկարծեք, թե նա շատ փարթամ աղջիկ է։ Մայրիկը նույնիսկ մի փոքր անհանգստանում է դրա համար։ Դե, բոլոր մայրիկներն ուզում են, որ իրենց երեխաները լինեն փարթամ, բարձրահասակ և որ բոլոր տեսնողները հիացմունքից թափահարեն գլուխներն ու զարմանքով բացականչեն. «Ի՞նչ եք ասում, ընդամենը ութ տարեկա՞ն։ Տասից պակաս չէի տա»։

Իսկ Կարոլինկան ճիշտ ութ տարեկանի տեսք ունի։ Բայց նա դեռ էլի՛ կմեծանա։ Կարոլինկայի մազերն էլ կարճեն. նրանք հիմա շատ բաց գույն ունեն և ամուր կապված են ժապավենով։ Գեղեցիկ ժապավենով մազափունջը նրան շատ է սիրունացնում... Նա կլորիկ մռութ ունի և փոքրինչ առաջ եկած ծնոտ։ Իսկ նրա աչիկները կատվի աչքերի նման մեծ են, կլոր և կանաչավուն։

Ահա այսպիսին է Կարոլինկան։ Պետք է ավելացնել նաև այն, որ Կարոլինկան տան միանուճարն է։ Նա միայն հայրիկ ունի, մայրիկ և Ագատա անունով մի մորաքույր։ Ագատա մորաքույրը մի քիչ գեր է և շարունակ անհանգստանում է, որ տնեցիները քիչ են ուտում։

Մի բան էլ կարելի է ավելացնել. մի երկու օրից Կարոլինկան վկայական կստանա, որտեղ նշված կլինի, որ նա փոխադրվում է երրորդ դասարան։

Այն պահին, երբ մենք տեսանք տուն վազող Կարոլինկային, նա դեռ ինքն էլ չգիտեր, թե ինչ արտասովոր բաներ են կատարվելու իր հետ։ Այդ ամենը սկսվեց նրանից, որ երբ հայրիկը ճաշին տուն եկավ, մի մեծ նորություն հայտնեց. մայրիկը, հայրիկը, Ագատա մորաքույրը և Կարոլինկան շուտով նոր բնակարան են փոխադրվելու։

Բոլորը ցնծությամբ ընդունեցին այդ նորությունը։ Իսկույն վճռվեց, որ կտեղափոխվեն մեկ շաբաթից և որ հենց հիմա պետք է սկսել իրերի կապկպումը։ Բացի դրանից, մայրիկը և հայրիկը որոշեցին, որ ճաշից հետո կգնան նոր բնակարանը տեսնելու և Կարոլինկային իրենց հետ չեն տանի, որովհետև նա դեռ դասերը չի պատրաստել։ Ճիշտ է, Կարոլինկայի համար դա այնքան էլ հաճելի չէր, որովհետև շատ կուզենար բազմապատկման աղյուսակը բերանացի անելու փոխարեն տեսնել նոր բնակարանը, բայց ինչ կարող էր անել։ Կարոլինկան արդեն գիտեր, որ միշտ չի կարող իր սրտի ուզածը կատարել։

Այս բոլորը տեղի ունեցավ այն օրը, երբ մենք առաջին անգամ հանդիպեցինք Կարոլինկային։ Իսկ հետո՝ մյուս օրը, նրա մյուս-մյուս օրը, նրա մյուս-մյուս օրը... ամբողջ շաբաթը բոլորը զբաղված էին իրեր կապկպելով։ Կարոլինկան էլ էր սարսափելի զբաղված։ Ինքներդ դատեցեք. նա պետք է տեղափոխման հարցերով զբաղվող հիմնարկությունից բերված արկղերից մեկում դասավորեր իր բոլոր գրքերն ու խաղալիքները։ Ճիշտն

* Այս համարից սկսում ենք «Երկնագույն հուլունքը» վիպակի տպագրությունը, որն ավարտվելու է 1965 թվականի կեսերին։



digitised by A.R.A.R.@

ասած, հայրիկը մի փոքր դժգոհեց, երբ տեսավ, որ Կարոլինկան արկղի մեջ է դնում նաև Էվելինկային՝ իր տիկնիկներից ամենադժբախտին, խեղճի գլխին մազ էլ չէր մնացել: Բայց Կարոլինկան այնպես թախանձանքով նայեց հայրիկին, որ նրա լեզուն չպտտվեց անգամ «նկատողություն» անել: Մանավանդ, որ մայրիկն էլ ասաց. «Թող վերցնի այդ քաչալ տիկնիկը: Կարոլինկան շատ է կապված նրա հետ»:

Եվ, վերջապես, եկավ նոր բնակարան տեղափոխվելու օրը:

## ԱՄԵՆ ԻՆՉ ՍԿՍՎԵՑ ՍՈՎՈՐԱԿԱՆԻ ՊԵՍ

Ճիշտն ասած, այդ օրը սկսվեց միանգամայն սովորական ձևով: Դե, ինչպես սովորաբար սկըսվում են այն օրերը, երբ մարդիկ նոր բնակարան են տեղափոխվում: Իսկ դա նշանակում է, որ դեռ լույսը չբացված, բոլորը ոտքի ելան, շատ արագ նախաճաշեցին և ոչ ոք Կարոլինկային չստիպեց կաթ խմել: Իսկ հետո անմիջապես եկան կապույտ արտահագուստ հագած բեռնիչներ և սկսեցին դուրս տանել գրքերով լի արկղերն ու կահկարասին: Եվ անսպասելիորեն պարզվեց, որ պատի այն մասը, որտեղ գրքերի պահարանն էր դրված, ավելի բաց գույն ունի, որ հին զամբյուղի հետևում, ուր պահվում էին զանազան անպետք շորեր և մայրիկի հին զգեստները, մկներն իրենց համար բույն էին շինել, որն հիմա, իհարկե, անբնակ էր: Եվ վերջապես պարզվեց, որ հատակի տախտակների արանքում, այնտեղ, ուր բուֆետն էր դրված, փայլփլում էր երկնագույն, լոբու պես երկարավուն մի հուլունք:

Չգիտես թե որտեղից էր այդտեղ ընկել. ո՛չ Կարոլինկան, ո՛չ մայրիկը, ո՛չ էլ Ագատա մորաքույրը նման հուլունքներ երբեք չէին ունեցել: Կարոլինկան ուզում էր անպայման ճեղքից հանել այն, բայց, չգիտես ինչու, մոռացավ: Նոր բնակարան տեղափոխվելիս միշտ այդպես է:

Հուլունքի մասին Կարոլինկան հիշեց միայն այն ժամանակ, երբ իմացավ, որ ինքն ու մորաքույր Ագատան առանձին տաքսիով պետք է գնան և, որ տաքսին արդեն իրենց է սպասում: Աղջիկը անհանգստացած չորս կողմը նայեց, բայց իսկույն թեթևացած շունչ քաշեց. փոշով ծածկված ճեղքի մեջ կապտին էր տալիս հուլունքը: Նույնիսկ, կարելի է ասել, որ պարզապես առկայծում էր մի զարմանալի, գեղեցիկ լույսով: Կարոլինկային թվաց, թե նա հիմա ավելի գեղեցիկ է, քան առաջ: Աղջիկը պպզեց և հատակին ընկած փայտի կտորով ճեղքից հանեց հուլունքը:

— Կարոլինկա՛,— լսվեց մորաքրոջ հուսահատ և ականջ ծակող ճիչը:

— Գալի՜ս եմ: Արդեն գալի՜ս եմ,— պատասխանեց Կարոլինկան և աստիճաններով ցած վազեց: Հուլունքը նա ամուր սեղմել էր ափի մեջ, որովհետև շատ էր վախենում, որ վայր գցի:

— Դե շո՛ւտ: Տե՞ր իմ աստված,— շարունակ բացականչում էր մորաքույրը:— Բարի եղեք,— դիմեց նա վարորդին,— տարեք մեզ, խնդրում եմ, Ծաղիկների փողոց, տուն քսան: Միայն թե որքան կարելի է արագ:

Կարծես քաղաքի բոլոր տաքսիները, ավտոբուսները, բեռնատար մեքենաները, տրամվայները և տրոլեյբուսները պայմանավորվել էին նույն ժամին հանդիպել այդ փողոցում: Մի անտանելի իրարանցում էր սկսվել:

— Սարսափելի խցան է առաջացել,— զայրացավ վարորդը:— Անցնելու հնար չկա: Այս ժամին երթևեկությունը միշտ այսպես շատ է լինում: Ա՛յ, եթե իմ տաքսին կարողանար օդով թռչել, մենք իսկույն Ծաղիկների փողոց կհասնեինք: Ճի՞շտ եմ ասում, աղջիկս:— Նա դարձավ Կարոլինկայի կողմը:

— Իհա՛րկե, շա՜տ լավ կլիներ,— քաղաքավարությամբ համաձայնեց Կարոլինկան,— ես էլ շատ կուզենայի, որ մեր տաքսին թռչել կարողանար:

Հենց նույն պահին աղջիկը մի թեթև ցնցում զգաց և հիացմունքով նկատեց, որ տաքսին օդ է բարձրանում՝ ներքևում թողնելով փողոցը, իրար գլխի կուտակված ավտոմեքենաները և ռելսերի վրայով դես ու դեն գնացող տրամվայները, իսկ քիչ հետո հեշտությամբ թռավ-անցավ նաև տանիքների վրայով:

Կարոլինկան նայեց Ագատա մորաքրոջը: Տեսնես նա ի՞նչ է մտածում այս ամենի մասին: Բայց մորաքույրը ննջում էր: Հետո Կարոլինկան դիմեց վարորդին.

— Դե, խնդրեմ, թռչել էիք ուզում:

Վարորդը, խորամանկ ժպիտը դեմքին, դարձավ դեպի Կարոլինկան և բթի տակ ասաց.

— Հիանալի է:

Հենց այդ պահին նա շրջանցեց քաղաքապետարանի աշտարակը և մեքենան ուղղեց դեպի ինչ-որ բարձր շենքի տանիքը:

— Վա՛յ, ախր սա մեծ ունիվերմագն է,— զարմացավ Կարոլինկան:




digitised by A.R.A.R.@

Վարորդը գլխով արեց և սիրալիր հարցրեց.

— Միգուցե ներս գնալու մի՞տք ունես։ Եթե ուզում ես, կարող ենք մի երկու րոպեով կանգ առնել։

— Օ՜հ ի-հար-կե, ու-զո՜ւմ եմ,—հուզմունքից կակազելով, ասաց Կարոլինկան,—եթե միայն կարելի է։

— Դե, իհարկե, կարելի է։

Կարոլինկան անհանգստացած նայեց մորաքրոջ կողմը. նա հենց նոր էր արթնացել։

— Ինձ թվաց, թե դուք ուզում եք ունիվերմագ մտնել,—նկատեց մորաքույրը և եռանդով ավելացրեց.—Ես էլ հաճույքով կգամ ձեզ հետ։ Ինձ համար գլխարկ պիտի ընտրեմ։

— Այդ դեպքում պետք է չորրորդ հարկի մոտ կանգ առնել. այդպես ավելի հարմար կլինի ձեզ համար,—վճռեց վարորդը։

— Ես շատ զգացված կլինեմ,—սիրալիր պատասխանեց մորաքույրը։



Մորաքույրը դեռ խոսքը չէր ավարտել, երբ մեքենան հասավ չորրորդ հարկի բարձրությանը և հսկայական բաց պատուհանից ներս սուրաց։ Բայց չգիտես ինչու, դա ոչ մեկին չզարմացրեց։

— Ես ուզում եմ միայն տիկնիկների տնակները տեսնել,—ասաց Կարոլինկան։

Իսկ Ագաթա մորաքույրը արդեն տեղավորվել էր վաճառասեղանի մոտ և հերթով փորձում էր ձեռքն ընկած գլխարկները։

Խաղալիքների բաժնի տիկնիկների սենյակները շա՜տ գեղեցիկ էին։ Հատկապես նրանցից մեկը՝ վարդագույն կահավորվածը։

— Ի՞նչ է, որևէ բա՞ն ես ուզում գնել,—հարցրեց վաճառող կինը Կարոլինկային։—Ա՛յ, գնիր այս վարդագույն կարասիներով սենյակը։ Տեսնու՞մ ես, էլեկտրական լուսավորություն ունի, իսկ ահա այս կողմում՝ լողարանն է։ Կամ գուցե տիկնի՞կն ես ուզում։ Մի տես ի՜նչ գեղեցիկ մազեր ունի։ Կարելի է և լվանալ։

— Բայց ես փող չունեմ,—ամաչկոտությամբ պատասխանեց Կարոլինկան։

— Էհ,—ձեռքը թափ տալով վաճառող կինը, տարօրինակ ձևով ժպտալով,—ոչ մի փող էլ պետք չի եթե դու ինձ տաս գտածդ երկնագույն հուլունքը...

Կարո լինկան նոր միայն հիշեց հուլունքի մասին։ Այս մորաքո՞ւյրը որտեղից իմացավ... Կարոլինկան դեռ ուշքի չէր եկել և ձեռքն արդեն տարել էր գրպանը հուլունքը հանելու, երբ հենց նույն պահին մոտ վազեց վարորդը։ Եվ որքա՜ն մեծ եղավ Կարոլինկայի զարմանքը, երբ նա սկսեց զայրացած բղավել վաճառողի վրա։

— Ի՞նչ է, ուզում ես հուլունքը խլե՞լ։ Այդ քեզ չի՛ հաջողվի։

Եվ հետո ամուր բռնելով Կարոլինկայի ձեռքը, նրան՛ ̈տա-րավ իր հետ։

— Մենք պետք է հենց հիմա գնանք այստեղից։ Ա՜խ, Կարոլինկա,— նա հանդիմանանքով թափահարեց գլուխը,—ինչպե՞ս կարելի է այդպես թեթևամիտ լինել։ Կամ, գուցե, ինձ միայն թվաց, Դե դու ուզում ես երկնագույն հուլունքդ Ֆիլոմենային տալ։

— Ֆիլոմենայի՞ն,— զարմացավ Կարոլինկան։— Իսկ ո՞վ է Ֆիլոմենան։

— Մի՞թե չգիտես,—վարորդը շատ էր անհանգստացած։— Մի՞թե դու չգիտես Ֆիլոմենային. նա աշխարհի ամենախորամանկ կախարդներից մեկն է։ Ես նրան շատ լավ եմ ճանաչում։ Ես էլ, երբ դեռ շատ փոքր էի... մի երկնագույն հուլունք ունեի։ Եվ հենց այս նույն Ֆիլոմենան ուզում էր ինձանից խլել հուլունքը։

Երբ նրանք հասան կանացի գլխարկների բաժինը, Ագաթա մորաքույրը, երանելի ժպիտը դեմքին, մանուշակներով զարդարված մի ծիծաղելի գլխարկ էր փորձում։

— Մենք ոչ մի րոպե չենք կարող կորցնել,—ասաց վարորդը և պատասխանի չսպասելով՝ քաշեց նրա ձեռքից։—Տու՜ն, տու՜ն պետք է փախչել։ Ֆիլոմենան մեզ հետապնդում է։



digitised by A.R.A.R.@

— Ֆիլոմենան կախարդ է, մորաքույր,— շտապեց բացատրել Կարոլինկան։

Խաղալիքների վաճառասեղանի հետևից դուրս վազեց զգզված Ֆիլոմենան։ Նոր միայն Կարոլինկան նկատեց, որ Ֆիլոմենան շատ երկար ու սուր քիթ ունի, ճիշտ և ճիշտ արագիլի կտուցի նման։ Ձեռքը մեկնելով Կարոլինկայի կողմը, նա ինչ-որ բան էր ճչում, բայց թե ինչ՝ չէր լսվում, որովհետև ունիվերմագում, ինչպես միշտ, սոսկալի աղմուկ էր։ Ֆիլոմենան իզուր էր շտապում, Կարոլինկայենց տաքսին նորից սլանում էր օդում։

Կարոլինկան շատ էր ուզում Ֆիլոմենայի և այդ հուլունքի մասին մի կարգին հարցուփորձ անել վարորդին, բայց Ագատա մորաքույրը խանգարում էր։ Իր նոր գնած գլխարկով հիացած, նա հայացքը չէր կարում հայելուց և շարունակ պահանջում էր, որ Կարոլինկան ու վարորդը գովեն իր նոր գլխարկը և հատկապես հիանան նրա վրայի ծաղիկներով։

Հանկարծ տաքսին կանգ առավ։

— Ի՞նչ պատահեց,— զարմացավ Կարոլինկան։

— Հասանք,— ասաց վարորդը,— ահա Ծաղիկների փողոցի համար 20 տունը։

Կարոլինկան շատ էր ուզում էլի խոսել վարորդի հետ, բայց Ագատա մորաքույրը արագ բռնեց նրա ձեռքը և քարշ տվեց իր հետևից դեպի նորակառույց շենքը։ Կարոլինկան հազիվ հասցրեց ետ նայել վարորդի կողմը։ Նա ժպտաց, գլխով հրաժեշտի նշան արեց և մեկնեց։

(Շարունակելի)

# Վիրավոր կռունկը

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ



— Զախորդ օր էր այսօր, ճախորդ,—
Քրթմնջում էր պապը որսորդ.
Տուն էր եկել նա գլխիկոր,
Բերել թռչուն մի վիրավոր։

— Վա՜յ, այս ինչ մեծ թռչուն է, պա՛պ,—
Ուրախ-ուրախ ասաց Արան։—
Արագի՞լ է սա, թե կարապ,
Այս ինչպե՞ս ես խփել սրան...

— Ո՛չ կարապ է, ո՛չ արագիլ,
Ես չեմ խփել սրան, որդի,
Սա կռունկն է մեր տարագիր,
Սիրելին մեր ժողովրդի։

Ես քեզ համար շատ եմ երգել
Երգը «Կռունկ, ուստի՞ց կուգաս»։
Սրա վրա պապիդ ձեռքը
Չի արձակի գնդակ, տղա՛ս...

Չար ուրուրն է սրան զարկել,
Թևը կոտրել միանգամից։
Խեղճ թռչունը ետ է ընկել
Ու բաժանվել իր երամից։

Հարկավոր է մի լավ բուժել
Լրաբերին մեր աշխարհի։
Էլ չի կարող չվել, ուշ է,
Հյուր կմնա մեզ այս տարի։

Տաք օրերին եկող գարնան,
Հեռո՜ւ, հեռու երկրներից,
Երբ ընկերներն իր ետ դառնան,
Սա կգտնի նրանց նորից։—

Եվ բուժում են պապիկ ու թոռ
Ու խնամում խեղճ կռունկին,
Իսկ կռունկը կարոտով խոր
Նայում է միշտ լուրթ երկնքին։

— Ինչ տխո՜ւր է կռունկը, պա՛պ,
Ամպերին է նայում նորից։
— Է՜հ, դժվար է, դժվար անչափ
Բաժանվելը ընկերներից...—

Ու նայելով այդ թռչունին,
Շատ է տխրում նաև Արան։
Նա էլ ոչ մի ընկեր չունի,
Բոլորն անցան նոր դասարան։

Միայն ինքն է ետ մնացել
Այդ վիրավոր կռունկի պես։
Շատ է լացել ու զղջացել,
Բայց լացելով էլ ի՞նչ կանես։

Կռունկը դեռ ունի պատճառ,
Չար ուրուրն է խփել նրան։
Խեղճ տղայի բանն է դժվար,
Ոչ մի պատճառ չունի Արան...



digitised by A.R.A.R.@



# Մանուկ շախմատիստի ԴՊՐՈՑ

Դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

Անցյալ անգամ մենք քննարկեցինք այնպիսի դեպքեր, երբ հակառակորդներից մեկի մոտ կար ավելի զինվոր: Հիշենք, այն զինվորը, որի ճանապարհին չկա հակառակորդի զինվոր և առաջխաղացման դեպքում գտնվում է մրցակցի այլ զինվորների հասանելիությունից դուրս, կոչվում է *անցողիկ զինվոր*:

Ուժեղագույն կողմը հաջողության կարող է հասնել ոչ միշտ, եթե նույնիսկ արքան իր զինվորի առաջն է գտնվում: Նայեցեք այս դիրքին:



Խաղատախտակի վրա եզրային զինվորի առկայության դեպքում միայնակ արքային բավական կլինի գրավել այն դաշտերից մեկնումեկը, որոնցով անցնող զինվորը կարող էր վերածվել թագուհու: Այդ դեպքում արդյունքը կլինի ոչ-ոքի: Եթե դա նրա համար մատչելի չէ, ապա հակառակորդի արքային պետք է սեղմել եզրային գծին:



Այստեղ սև արքային անհրաժեշտ է մանևրել այն հաշվով, որպեսզի սպիտակ արքային եզրային գծից բաց չթողնի և միաժամանակ ձգտի կանգնել հակառակորդի զինվորի ճանապարհին: Ոչ-ոքին ակներև է:

Եզրային անցողիկ զինվորներով դիրքերը առհասարակ իրենց առանձնահատկությունները ունեն: Վերադառնանք առաջին դիրքին և ավելացնենք ևս մեկ սպիտակ ֆիգուր:



Չնայած նյութական խոշոր գերակշռությանը, այստեղ սպիտակները հաղթել չեն կարող: Սև արքան քայլում է g8 և h8 դաշտերով, և սպիտակների զինվորը ի վիճակի չէ թագուհի դառնալ:

Մի դեպք ևս:



Այս դրության մեջ խաղի ելքը կախված է քայլի հերթից: Եթե քայլը սևերինն է, ապա նրանք ստիպված են սպիտակ արքային բաց թողնել անկյունից, ուր նա փակում էր իր սեփական անցողիկ զինվորի ճանապարհը: Իսկ եթե սկսեն սպիտակները, ապա ձիու ամեն մի քայլից հետո սև արքան հետևելով արդեն ծանոթ սկզբունքին (հակառակորդի արքան սեղմել եզրային գծին), մանևրում են f7 և f8 դաշտերով, և ոչ-ոքին նրանց համար ապահովված է:

ԱՌԱՋԱԴՐԱՆՔ. Լավ համոզվեցեք այդ բանում: Բաժանվեցեք զույգերի և փոխելով ֆիգուրները ժամանակ առ ժամանակ խաղացեք այդ *վերջնախաղային դիրքերը*:

Խաղի եզրափակիչ փուլը, երբ տախտակի վրա արդեն մնացել են փոքր թվով ֆիգուրներ, ընդ որում իբրև կանոն փոխանակվել են թագուհիները, շախմատային գրականության մեջ ընդունված է անվանել *վերջնախաղ*:

Այժմ, երբ մենք ուսումնասիրել ենք նյութական առավելության իրացման տարբեր տեսակները, անցնենք պայքարը վարելու եղանակների քննարկմանը:



digitised by A.R.A.R.@

## ԱՐՔԱՅԻ ԴԻՐՔԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐՏԻԱՅԻ ԲԱԽՏԸ ՈՐՈՇԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Եթե կողմերից մեկի արքան վատ դիրք է գրավում (թույլ է կամ լրիվ բացակայում է զինվորային ծածկույթը. որը շախմատում արքայի համար հաճախ ծառայում է այն, ինչ որ զրահը կրիայի համար. ֆիգուրները արքայի հուսալի պաշտպանություն չեն ապահովում) անմիջական սպառնալիքներ ստեղծելու հնարավորությունը հաճախ վճռական դեր է խաղում:



Այս դիրքում, չնայած սևերի խոշոր նյութական գերակշռությանը, նկատվում են բոլոր վերոհիշյալ թերությունները: Քայլը սպիտակներինն է. նրանք պարտիան շարունակում են այսպես. 1... Թh6 - Աg8 2. Թh7×:

ԱՌԱՋԱԴՐԱՆՔ. Խաղատախտակի վրա դասավորեցեք հետևյալ դիրքերը: Ամենուրեք քայլը սպիտակներինն է: Նրանք խաղը շահում են՝ արքայի վրա կատարած ուղղակի գրոհով:

1. ՍՊԻՏԱԿՆԵՐ՝ Աg1, Թh5, Ձg5, զզf2, g2, h3 (6):

ՍԵՎԵՐ՝ Աg8, Թa6, Նa2, Փe7, Ձc7, զզf7, g7, h7 (8):

2. ՍՊԻՏԱԿՆԵՐ՝ Աg1, Թh4 Փf6, զզf2, g2, h3(6):

ՍԵՎԵՐ՝ Աf8, Նb5, Նe8, Ձg6, Փc6, զզe6, b2, d4(8):

3. ՍՊԻՏԱԿՆԵՐ՝ Աg1, Ձg5, Փa2, Փe3, զզf2, g2, h3 (7):

ՍԵՎԵՐ՝ Աg8, Թd5, Նb8, Ձf8, զզf7, g6, h6(7):

Բոլոր այս դեպքերում սպիտակները հաղթանակի են հասնում. օգտվելով խաղատախտակի վճռական տեղամասերում ունեցած ուժերի գերակշռությունից:

Իսկ եթե վերոհիշյալ բոլոր դեպքերում քայլը պատկանի սևերին. ապա նրանք փակելով խոցելի կետերը. խաղը շահելու շանսեր կստանան: Չէ՞ որ նրանք նյութական գերակշռություն ունեն: Քննարկենք մի հետաքրքիր դեպք:



Այս դրությամբ քայլը սպիտակներինն է: Սևերին լուրջ վնաս հասցնելու ամեն մի փորձը, անգամ 1. Նd6 - -, հաջողություն չի հասցնի. որովհետև գրոհող երկու ֆիգուրներն էլ գտնվում են հարվածի տակ: Իսկ եթե նավակով f8 գնալով հայտարարենք շախ. ապա հեշտ է նկատել, որ սև արքան անակընկալ կերպով ընկնում է սպիտակ երկու ֆիգուրների միաժամանակյա հարվածի տակ՝ նավակի ու փղի: Նման հարձակումը կոչվում է *«կրկնակի շախ»*: Նրա գլխավոր տարբերությունը արքայի վրա կատարվող ավելի պարզ հարձակումներից կայանում է նրանում, որ կրկնակի շախի միակ պաշտպանությունը՝ արքայի փախուստն է: Իսկ սովորական շախից կարելի է պաշտպանվել մի քանի եղանակով. գրոհող ֆիգուրը վերցնելով կամ ընդհատելով նրա գործողությունը, ինչպես ասում են. շախից փակվելով կամ արքայով տեղափոխվելով: Այնինչ կրկնակի շախի դեպքում միակ փրկությունը արքայի փախուստն է: Բերված դեպքում 1. Նf8 - Աh7 2. Նh8 քայլերից հետո սպիտակները շահում են:

Միշտ չէ, որ շատ ֆիգուրներ են անհրաժեշտ հակառակորդի արքային մատ անելու համար: Նայեցեք հետևյալ դիրքերին:









digitised by A.R.A.R.@



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված**

# ՈՎՔԵՐ ԵՆ ՄԵՐ ԱՄՍԱԳՐԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ



## ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

Բոլոր հարցերին ճիշտ պատասխանողները կպարգևատրվեն առաջին կարգի հուշաթերթով: Երկրորդ կարգի հուշաթերթի կարժանանան նրանք, ովքեր կպատասխանեն ոչ պակաս, քան 18 հարցի: Իրենց սպառիչ պատասխաններով ու գրագետ շարադրանքով առավել աչքի ընկած ընթերցողները խմբագրության կողմից կխրախուսվեն նաև նվերներով:

Յուրաքանչյուր հարցի պատասխանը գրելուց հետո, պետք է նշել, թե «Պիոների» ո՛ր համարում է այդ մասին տպագրված, ինչպես նաև՝ նյութի վերնագիրը:

Խմբագրությունը պատասխանները պետք է ստանա ոչ ուշ, քան հոկտեմբերի 10-ը (Հայաստանում ապրողների համար), հոկտեմբերի 15-ը (Սովետական Միության այլ հանրապետություններում ապրողների համար), և հոկտեմբերի 30-ը (արտասահմանում ապրողների համար):

Արդյունքները կհրապարակվեն նոյեմբեր ամսվա համարում:

Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել մինչև 15 տարեկան հասակի երեխաները:

Պատասխանները ուղարկելիս չմոռանաք գրել ձեր ազգանունը, անունը, հայրանունը, տարիքը և հասցեն:

*1. Ե՞րբ է տեղի ունեցել գիտական այն բանավեճը, որը հայտնի է «մանդարինի և կիտրոնի վեճ» անունով: Ովքե՞ր էին վիճողները: Ինչո՞վ վերջացավ այդ վեճը:*

*2. Էջմիածնի Գևորգյան ճեմարանում ո՞վ էր հայոց լեզվի ու գրականության ուսուցիչը որի սրտառուչ խոսքերի ու բարի խորհուրդների ազդեցությամբ տակ իրենց բանաստեղծական ճերջնչանքն են ստացել բազմաթիվ հայ գրողներ, այդ թը-*




Խմբագիր՝ ՍԱՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱՂԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 07808։ Պատվեր՝ 1311։ Տպաքանակ՝ 13 900։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 5/IX 1964 թ.։ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ։ Երևան Տերյան փ., № 91։

Գինը 20 կ.


digitised by A.R.A.R.@

վում նաև Ավետիք Իսահակյանը:

3. Ցարական չինովնիկները ո՞ւմ վրա էին հսկողություն սահմանել, որպեսզի նա ո՛չ գրեր և ո՛չ էլ նկարեր:

4. «...Հանցագործ են համարվում նաև Նարնջագույնը, Երկնագույնը, Կանաչը, Մանուշակագույնը և մյուս 25 գույները»: Ո՞ր թագավորի հրամանից են վերցված այս տողերը: Ինչպե՞ս էր նա դարձել թագավոր:

5. Ինչի՞ մասին էին պատմում այն սեպագիր արձանագրությունները, որոնք գտնվեցին Արինբերդի պեղումների ժամանակ:

6. «...Անանիկը ամենայն ըզգուշությամբ հորեղբոր խցից վերցնելով նկուղի և կալանավորի բազուկները շղթայող փականքների բանալիները, նորից հայտնվեց ժայռոտ արահետի վրա»: Ո՞ր պատմվածքից են վերցված այս տողերը:

7. «Տարօրինակ մարդը» ավտոբուսում ինչպե՞ս էր իմանում ուղևորների անունները:

8. Ո՞ր թվականին է Երևանում տեղացել բաց դեղնավուն անձրև, իսկ Ապարանում՝ կարմրավուն ձյուն:

9. Ինչպե՞ս է կոչվում այն հրաբուխը, որի վրա աճող բույսերից մեկը ծաղկում է միայն այն ժամանակ, երբ հրաբուխը պետք է ժայթքի: Որտե՞ղ է գտնվում այդ հրաբուխը:

10. Փոքրիկը ի՞նչ խնդրեց բարձրահասակից, երբ սա առաջարկեց պատժել այն չար տղաներին:

11. Ի՞նչ դեպք դրդեց Ժյուլ Վեռնին գրելու «Թռիչք դեպի Լուսին» վեպը:

12. Ո՞ր երկրում է տեղի ունեցել հետևյալ դեպքը. մի մարդ նամակ է գրում իր ծանոթին, որն ապրում է նույն քաղաքում: Ծրարի վրա ճիշտ նշում է հասցեն և գցում փոստարկղ, բայց նամակը տեղ է հասնում... վաթսունհինգ տարի հետո:

Օլեշնիցա քաղաքի դըպրոցականները Հայաստան ուղարկած իրենց նամակներում ո՞ւմ մասին էին գրում: Որտե՞ղ է գտնվում այդ քաղաքը:

14. Որտե՞ղ է ապրում խազմարինիկուսը և ինչո՞վ է նա նշանավոր:

15. Ո՞վ էր այն աշխարհահռչակ գիտնականը, որը մեռնում էր ծայրահեղ աղքատության մեջ և մեռնելուց առաջ խնդրում էր ընկերոջը այրել իր խոշոր հայտնագործությանը վերաբերող բոլոր ձեռագրերը: Ինչո՞ւ:



16. Հայ բեմում առաջին անգամ ո՞վ է հանդես եկել Լենինի դերով, ե՞րբ, ո՞ր պիեսում:

17. Ի՞նչ բան է կրոտիլինը. որտե՞ղ է ստեղծվել և ո՞ւմ գըլխավորությամբ:



18. Ո՞ւմ են վերաբերում Արիստոտելի հետևյալ խոսքերը. «Դա հեքիաթ չէ, այլ՝ ճըշմարտություն: Մարդիկ ու ձիերը շատ փոքր են և նրանք ապրում են անձավներում»:

19. Ինչո՞ւ Գասպարից վիրավորվեցին իր ընկերները, երբ խմբագրության աշխատակիցը եկել էր նրանց բակը:

20. Ինչո՞վ է նշանավոր Ստրատֆորդ քաղաքը:

21. Ինչպե՞ս է կոչվում այն խմբաքանդակը, որի թեման վերցված է «Էնեականից»: Ի՞նչ է պատկերված այդ խմբաքանդակում:

22. Ո՞ր կղզում է գտնվում այն լիճը, որտեղ ջրի փոխարեն կա... հեղուկ ասֆալտ:

23. Ո՞ր օվկիանոսում է խորտակվել «Տիտանիկ» շոգենավը և ե՞րբ:

24. Ո՞վ էր այն մեծ արվեստագետը, որի աճյունը գողացան Հռոմից և թաղեցին Դանթեի կողքին:

## Պատասխանում ենք

### «ՊԻՈՆԵՐ» № 7

ԲԱՌԱՇՂԹԱ «ԱՎԻԱՑԻԱ ԵՎ ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՈՒԹՅՈՒՆ» — 1. Բիկովսկի: 2. Իլ: 3. Լավոչկին: 4. Նևա: 5. Ամպրոպ: 6. Պոլյոտ: 7. Տիեզերանավ: 8. Վոստոկ: 9. Կալուգա: 10. Անտոնով: 11. Վըլադիվոստոկ: 12. Կոժեդուբ. 13. Բախշինյան: 14. Նորմանդիա: 15. Ավիամոդելիստ: 16. ՏՈՒ: 17. Ուղղաթիռ: 18. Ռմբակոծիչ: 19. Զայկա:

«ԽԱՉԲԱՌ» — Ուղղահայաց: 1. Մորոզով: 3. Կրավչուկ: 4. Կազեյ: 6. Գոլիկով: 8. Շեփոր: Հորիզոնական — 2. Կոտիկ: 5. Հակոբյան: 7. Կոշևոյ: 9. Վզկապ: 10. Խամզոկով:

«ՎԻԿՏՈՐԻՆԱ» — Ավետ Գաբրիելյան (ՀՍՍՌ ժողովրդական արտիստ), ջութակ: Ռաֆայել Դավթյան (վաստակավոր արտիստ), ջութակ: Հենրիխ Թալալյան (վաստակավոր արտիստ), ալտ: Սերգեյ Ասլամազյան (ՀՍՍՌ ժողովրդական արտիստ), թավջութակ:

«ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ» — Պահարան, տոնածառ, ամպրոպ, հրաբուխ:

digitised by A.R.A.R.@

ՀԱՅԿ ՆԱԶԳԱՇՅԱՆԸ մի ժամանակ Ադիս-Աբեբայի Գևորգյան վարժարանի ուսուցիչ էր: Ազատ ժամերին նա սիրում էր որսորդությամբ զբաղվել, իսկ Եթովպիայի անապատները հարուստ են որսով. և՛ շերտավոր զեբրեր կան, և՛ առյուծնե՛ր. միայն հարկավոր է համարձակ լինել ու դիպուկ կրակել իմանալ, ինչպես անապատաբնակ այս տղան:

Անցյալ տարի Նազգաշյանը այցելեց Հայաստան և հանդիպում ունեցավ գրող ու հմուտ որսորդ Վախթանգ Անանյանի հետ, որի խորհրդով էլ նա մեզ ներկայացրեց որսորդական այս լուսանկարները:





digitised by A.R.A.R.@